# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## №: 4 ● 1984

Լույս է տեսնում 1923 թվականից





ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ԱՐԵՎԻ ՊԱՐԳԵՎՆԵՐԸ



Արեգակի կանչով զվարթ
Շարք կանգնեցին ծաղիկ ու վարդ,
Խոտեր, սեզեր՝ մետաքս ու խաս,
Տերև ու տունկ՝ շորերն ատլաս...
Ջրերն ասին՝ տուր, արեգակ,
Մեզ զրնգուն հազար զանգակ:
Գառներն եկան՝ գարնան կարոտ,
Ասին՝ մեզ տուր փարթամ արոտ:
Հավքերն ասին՝ երկինք տուր մեզ,
Ելևէջող երգեր պես-պես:
Լեռներն ասին՝ դու մեզ համար
Հույսով, լույսով միշտ արթնացիր,
Դաշտերն ասին՝ դու մեզ վրա
Ծիածանի կամար դարձիր:
Եվ արևը հարցրեց մարդուն.
— Ի՞նչ տամ ես քեզ:—
Մարդը ժպտաց խորախորհուրդ,
Երկինք նայեց խոնարհ ու հեզ,
Ասաց՝ քեզնից, բարի՛ արև,
Խաղաղություն եմ լոկ խնդրում...
Երջանկություն, ժպիտ ու երգ
Իմ ձեռքով եմ ես ձեռք բերում:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

# ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿԻ ZԵՏ

## 4.

«Մարդը ափի մեջ» գրքի քննարկումն էր «Գիտելիք» ընկերության շենքում, որը այն ժամանակ գտնվում էր Ազիզբեկովի հրապարակում։ «Գիտելիքը» չորրորդ հարկում էր տեղավորված։ Դուռ-լուսամուտ փակված էին։ Ասեղ գցելու տեղ չկար։ Ընկերության ղեկավարներն ասում էին, որ այդ շենքը իր կառուցման օրվանից այսքան բազմություն չի տեսել։ Մեծ մասամբ երիտասարդներ էին։

Ես էի զեկուցողը։ Հետո՝ ելույթնե՜ր, ելույթնե՜ր... Վերջը չէր երևում։

Պարույրը կարճ խոսեց, հոգնած էր։ Հարցերին պատասխանում էր հակիրճ, երբեմն նույնիսկ խուսափողաբար։ Գրական երեկոն ավարտված էր, բայց մարդիկ փակել էին մուտքը և Պարույրին շուրջկալել։ Խոսում էին, հարցեր տալիս։

Կես ժամից ավելի տևեց «Գիտելիքի» շենքից դուրս գալը, մի այնքան էլ՝ Ազիզբեկովի հրապարակից։

(սկիզբը՝ № 1—3-ում)

***

Ամբողջ Արևելքում փառաբանված մի թագավոր՝ Սողոմոն անունով, որ աշխարհին հայտնի էր իր առասպելական իմաստությամբ և հարստությամբ, իր «Երգ երգոց» պոեմում հավերժացրեց Սուլամիթա անունով մի հասարակ հովվուհու։ Եվ մի հայ բանաստեղծ էլ իր նույնանուն պոեմում փառաբանեց մի ուրիշ Սուլամիթայի։

Հուշագրության շրջանակներից դուրս չընգալու համար միայն պետք է ասեմ, որ այս երկու Սուլամիթներից և ոչ մեկի մտքով, երևի, չէր անցել, թե Ապոլոնի ընտրյալների կամքով պետք է մնան սերունդների հիշողության մեջ...

Գուցե մի քիչ այլ ձևով, ես իմ այդ խոհերին մասնակից դարձրի Պարույրին, և նա ասաց.

— Իսկ դու գիտե՞ս, որ Ռաֆայելյան նշանավոր Աստվածամոր նախատիպը եղել է մի հասարակ հացթուխի աղջիկ՝ Մարգարիտ անունով, որին սիրում էր Ռաֆայելը... Կըգրվե՞ր, արդյոք «Աստվածային կատակերգությունը», եթե չլիներ Բեատրիչեն՝ Դանթեի հոր ընկերոջ դուստրը։ Պետրարկայի սոնետների ներշնչողը Լաուրան էր, իսկ Բոկաչչոն իր «Դեկամերոնի» համար պարտական է Ֆիամետային... Եվ վերջապես ինչպե՞ս պիտի գրվեր «Մարիենբադյան էլեգիան», եթե 73-ամյա Գյոթեն չհանդիպեր 19-ամյա Ուլրիկային...

Դրանք բոլորը գուցե կենսագրական «մանրուքներ» են, բայց առանց այդ «մանրուքների» հիշյալ խոշոր գործերը չէին ստեղծվի։

Մոսկվայում տեղի ունեցած մեր այս խոսակցությունից շատ տարիներ հետո, երբ արդեն երկուսս էլ աշխատում էինք Երևանում, Պարույրը մի օր ինձ զանգ տվեց.

— Կգա՞ս վաղը գնանք Խոր Վիրապ... Հյուրեր էլ ունեմ։

— Ովքե՞ր են։

— Կգաս-կիմանաս։

— Ի՞նչ է հարկավոր վերցնել։

— Ոչ մի բան։ Ինչ-որ պետք է՝ ես կըվերցնեմ։

— Լավ գինի ունեմ, գոնե մի տասը լիտր վերցնեմ։

Մի փոքր մտածելուց հետո.

— Դե լավ, վերցրո՛ւ... Ուրիշ ոչ մի բան։

— Առանց լավաշի՞, մանավանդ հյուրեր կան։

Նորից կարճատև լռություն.

— Տիկն ես հա՜... Ժամը 11-ին դուրս ենք գալիս։



digitised by A.R.A.R.@

Հեռախոսի միջից ես կարծես տեսնում էի նրա դեմքի չարաճճի արտահայտությունը։

Հետևյալ օրը, պայմանավորված ժամին ես նրանց տանն էի՝ Կայանի վրա։ Նելլին էր ու մի անծանոթ զույգ։ Երկուսն էլ երիտասարդ, երկուսն էլ թխամորթ։ Պարույրը ներկայացրեց, դժբախտաբար, երկուսի անուններն էլ մոռացել եմ։ Ինձ թվաց ամուսիններ են։ Ամեն ինչ պատրաստ էր, ինձ էին սպասում։ Մի քանի րոպեից դուրս եկանք։ Նելլին մեզ հետ չեկավ, պատճառաբանելով, որ շտապ կարգով Պարույրի բանաստեղծությունների տողացի թարգմանությունները պետք է պատրաստի, Մոսկվայից են ուզել...

Երիտասարդուհին կողքիս նստեց, նրա ընկերը՝ Պարույրի հետ միասին՝ ետևում։ Խոսում էին, կատակում։

— Կայարանով գնա,— ասաց Պարույրը,— թող «Դավիթը» տեսնեն։ Մի փոքրիկ կանգառ՝ կայարանամերձ հրապարակում։ Ամբողջ ճանապարհին Պարույրը պատմում էր, սրամտում։ Երիտասարդը ավելի զուսպ էր ու լռակյաց, իսկ նրա ընկերուհին ստեպ-ստեպ ետ նայելով իր անզուսպ քրքիջով արձագանքում էր Պարույրի ամեն մի սրամտությանը։

Ոլորապտույտ կածանը մագլցում էր Խոր Վիրապի բլրակն ի վեր։ Մեքենան արգելակեցի մուտքի մոտ։ Բոլորիս հայացքները միանգամից գամվեցին Մասիսին։ Հեռվից հեռու նա մեզ ուղեկցում էր, բայց ուրիշ է Խոր Վիրապից։ Երազային, ձյունեղեն, ոգեղենացած... Ներքևում, նրա ոտքերը համբուրելով, հոսում ու խոսում էր Արաքսը։ Հազար անգամ Պարույրն ու ես տեսել էինք Մասիսը հենց այստեղից, բայց ամեն անգամ թվում էր առաջին անգամ ենք տեսնում։ Ինչպե՞ս հագենալ Մասիսից։ Վերացած էինք, հողից կտրված։ Հայացքով, աչքերով, սխալված չեմ լինի, եթե ասեմ՝ նույնիսկ ձեռքերով գրկումհամբուրում էինք սրբազան լեռը...

Քարե պարսպից ներս մտանք։ Ձախ կողմից նույն ինքը Մասիսն էր, որ բարձրանում





digitised by A.R.A.R.@

էր քանդված պարիսպներից վեր, երկնքից վեր, ինքն իրենից վեր, աջ կողմը Սուրբ Աստվածածին եկեղեցին էր:

Պարույրը ամենայն մանրամասնությամբ հյուրերին պատմում էր Արտաշատի հինավուրց մայրաքաղաքի, Հայաստանում քրիստոնեության տարածման և Գրիգոր Լուսավորչի մասին...

— Դեռևս 18-րդ դարում այստեղ եղել է մի դպրանոց, որտեղ սովորել են 40 աշակերտներ: Նրանցից մի քանիսը հետագայում դարձան նշանավոր պատմագիրներ, գրիչներ... Նրանցից մեզ են հասել տասնյակ ձեռագրեր, որոնք այժմ պահվում են Մատենադարանում...

Հետո թեքվեցինք ձախ, դեպի Մատուռ, որտեղ և Խոր Վիրապն է: Մատուռի Ավազ Խորանից, ուղղաձիգ աստիճաններով, իծաշարուկ իջանք ներքնահարկ, որտեղ, ըստ ավանդության, օձ-կարիճների ընկերակցությամբ, 14 տարի ապրել է Գրիգոր Լուսավորիչը... Պարույրը մեկ առ մեկ թվեց նրա 14 չարչարանքները, որոնց ենթարկվել էր նա Տրդատ թագավորի հրամանով...

— Ընդունենք, որ Գրիգորը սուրբ մարդ էր և որպես այդպիսին օձ-կարիճները նրան չէին կծում, բայց ինչպե՞ս էր ապրում նա առանց սնվելու,— ոչ առանց հումորի հարցրեց երիտասարդուհին:

— Ինչո՞ւ առանց սնվելու,— անմիջապես պատասխանեց Պարույրը,— այ տեսնո՞ւմ ես վերևի այն փոքրիկ անցքը, որտեղից լույս է թափանցում: Քեզ նման մի բարի կին ամեն օր մի կտոր հաց էր գցում ցած, և Գրիգորն ապրում էր դրանով:

— Եվ քանի որ մարդիկ ապրում են ոչ միայն բանիվ, այլև հացիվ, ժամանակն է, որ մենք էլ հետևենք ս. Գրիգորի օրինակին,— շրջանցելով աստվածաշնչյան հայտնի խոսքը, վերջապես խոսեց երիտասարդը:

Մետաղյա ուղղաձիգ աստիճաններով մենք նորից իծաշարուկ դուրս եկանք և Մատուռից աջ, որտեղ հիմա օժանդակ խցիկներ են կառուցված, «սեղան» բացեցինք: Ինչ ասես, որ չկար: Պարույրը, որպես լավ տանտեր, հոգացել էր ամեն ինչի մասին: Առաջին բաժակը, իհարկե, Արարատի կենացն էր, որը կարծես շունչ ու մարմին առած, նստել էր մեր կողքին: Հետո՝ հայ ժողովրդի... կենաց-բաժակները հաջորդում էին իրար: Ընտիր գինին, օդին ու կոնյակը իրենց գործը տեսնում էին: Եվ հանկարծ Պարույրը, բարձրացնելով բաժակը, աղոթքի նման շշնջաց.

— Սոլամիթի կենացը...

Դա շատ տարօրինակ հնչեց իմ ականջին... ինչո՞ւ հանկարծ Սոլամիթի... Ի՞նչ կապ ունի նա այս բոլորի հետ: Երիտասարդը մեղմորեն ժպտաց... Նրա ընկերուհին ջերմորեն պաշտպանեց կենացը... Եվ մենք բոլորս խմեցինք:

Այդ օրից մոտ մեկ ամիս մենք չհանդիպեցինք: Մի օր էլ գրողների տանը տեսա Պարույրի հորեղբորորդուն՝ Ալբերտ Արիստակեսյանին:

— Լավ քեֆ եք արել, հա՞,— հարցրեց նա իր մեղմ ու ցածրիկ ձայնով:

— Ի՞նչ քեֆ,— զարմացա ես, միանգամից գլխի չընկնելով, թե խոսքն ինչի մասին է:

— Խոր Վիրապում:

— Հաա՜, շատ լավ էր: Բայց ես այնպես էլ չիմացա, թե ովքե՞ր էին մեր հյուրերը:

Ալբերտը խորհրդավոր ժպտաց:

— Սոլամիթի եղբայրն էր ու եղբոր կինը՝ Վիլնյուսից...

* * *

Շիրազը և Պարույրը անհաշտ էին իրար հետ: Մի անգամ, իմ ներկայությամբ միմյանց խիստ վիրավորեցին: Մի օր հարցրի.

— Պարո՛ւյր, դու ինչպե՞ս ես վերաբերվում Շիրազի պոեզիային:

— Շիրազը մեծ բանաստեղծ է...

Իսկ երբ Պարույրը ավտովթարից զոհվել էր, Շիրազը պատվո պահակ էր կանգնել նրա դագաղի մոտ, որը դրված էր պետօպերայի նախասրահում:

Իմ երիտասարդ բարեկամներից մեկը մի օր ինձ ասաց, որ այդ նույն օրը ինքը այցելել է Շիրազին: Նա նստած է եղել մութ սենյակում, երբ երիտասարդը ուզել է լույսը վառել, Շիրազն ասել է.

— Լույսը չվառես... սուգ է:

* * *

Շատ դեպքեր ու արտահայտություններ չեն հանձնվում թղթին, շատերն էլ անհետ կորել են Լեթայի ալիքներում... Եվ ո՞վ մտքով կանցներ, որ ես մի օր պետք է հուշեր գրեմ իմ հասակակից ընկերոջ մասին:

Ականջներիս մեջ է գետնահարված բազեի թևերի շառաչյունը...

Հին հունական լեգենդներից մեկում պատմվում է, որ երբ բազեն ծնվեց, դեռ հող չըկար աշխարհում: Եվ մահանալուց հետո, չորս օր պտտվեց առանց շիրիմի: Եվ ձագը նրան թաղեց իր գլխում...

Մեր ժողովուրդը Պարույրին թաղեց իր սըրտում:



digitised by A.R.A.R.@

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՓՈՔՐԻԿ ՀԵՔԻԱԹ ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



Կար մի տիկնիկ անտառում,
Ապրում էր մենակ:
Տխուր երգեր էր երգում,
Քնում ծառի տակ:

Որտեղի՞ց էր հայտնվել,
Ոչ մեկին պարզ չէր.
Երկնքից էր գուցե նա
Մի գիշեր իջել:

Իջել էր ու մոլորվել,
Մոռացել ճամփան:
Եվ կարոտն էր լալիս նա
Իրենց ամպե տան:

Կամ ինչ-որ մեկն, ո՞վ գիտե,
Նրան կորցրել,
Փնտրել էր ու չէր գտել,
Թողել հեռացել...

Եվ ապրում էր նա այդպես
Անտառում մենակ:
Պայծառ արև էր, ամառ
Դեռ այն ժամանակ:

... Ամռան օրերը հերթով
Եկան ու անցան:
Եվ ծառերը աչքի դեմ
Քիչ-քիչ մերկացան:

Մութ էր երկինքը, ամպով,
Դանդաղ ձյուն մաղեց:
Տիկնիկի տաք արցունքով
Հողը ողողվեց:

Հետո... թե ինչ կատարվեց,
Օ՜, էլ մի ասի,
Ծառը կրկին կանաչեց
Ձմեռվա կեսին:

Երկինք հասավ՝ արձակած
Նոր ճյուղ ու տերև
Եվ տիկնիկին ճյուղ առ ճյուղ
Տարավ նա վերև:

Ու երբ իջավ նորից-նոր,
Դարձավ ձմռան ծառ,
Ձյուն կար չոր-չոր ճյուղերին,
Տիկնիկը չկար...

Միայն հեռու երկնքից
Մի երգ էր լսվում,
Մի երկնային, մի մաքուր
Հեքիաթ էր հյուսվում:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՁՈՂԼՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



# Ուզում եմ

Ուզում եմ ձուլվել մորս արցունքին,
Նրա ծիծաղի վեհ ալիքներին,
Հորս կոշտացած ձեռքի դաստակին,
Նրա խնամած ծառի սաղարթին։
Ուզում եմ ամեն ծաղկի հետ բացվել
Ու առվակի հետ զուլալ կարկաչել,
Ապրել պտղի հետ այն երանելին,
Որ ստանում է նա ջինջ արևից։

ՆԱԻՐԱ ԻԳԻԹՅԱՆ
Աշտարակի շրջան, գ. Օշական, Մաշտոցի
անվան դպրոց, 8-րդ դասարան

ՄԱՆՎԵԼ ՇՀԱՆՅԱՆ
Երևանի № 163 դպրոց, 4-րդ դաս.

«ՄՐԳԵՐ»



«ԲՆԱՆԿԱՐ»





digitised by A.R.A.R.@



# Ձնծաղիկը

Արևն է երգում,
Արևի կանչից
Ջյուներն են հալվում
Սարերի լանջին։
Ու դեռ չհալված,
Դեռ չեղած գարուն,
Ձնծաղիկն հանկարծ
Գլուխն է հանում։

Կանգնում է մենակ
Ջյուների ցոլքում,
Հայացքը հառած
Արևի շողքին։

— Մենակ եմ, մենա՞կ,—
Լալիս է, լալիս։
Ու քույրիկներն են
Հողից դուրս գալիս։

ՍԱՀԱԿ ՀՈՎՍԵՓՅԱՆ
Բոգդանովկայի շրջան,
գյուղ Հեշտիա,
6-րդ դասարան





ԵՐԵՔ ՔԱՆԴԱԿ
ՏԻԳՐԱՆ ՄԱՆՈՒԿՅԱՆ
Երևանի 189 դպր. 6-րդ դաս.



digitised by A.R.A.R.@

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

# ՀԱՆՈՒՆ ԸՆԿԵՐԱՍԻՐՈՒԹՅԱՆ



Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Մեր դասարանում ինչպիսի, փոքր թե մեծ, անկարգություն պատահեր, Հրանտի մատը խառն էր լինում: Նա էր սկսողը ոգևորողը, ինչպես ընկեր Հայկն էր ասում՝ «գլխավոր գործող անձը»:

Մի անգամ նա հետը դպրոց բերեց կինոժապավենից պատրաստած «ճռճռիկ»: Սովորական մի ժապավեն, որը փոքրիկ ծրարի պես չորս կողմից ծալված էր ներս, և երբ սեղմում էիր, մի տեսակ սուր ձայն էր հանում, ասես ճռիկ լիներ:

Հրանտը դասարանում իր «ճռճռիկը» ցույց տվեց մի քանիսին:

— Ճը՛ռ-ճը՛ռ,— ճռճռացրեց նա,— ի՞նչ ես ասում, «ճռճռիկ»: Ճը՛ռ-ճը՛ռ...

Առաջին դասին, որ հայոց լեզվի ժամ էր, ընկեր Վարդումյանը կարդում էր դանդաղ, հատ-հատ, բոլորս լարված գրում էինք, և դասարանում, ինչպես ասում են, մեռելային լռություն էր: Ու մեկ էլ... Մեկ էլ այն անկյունից, ուր Հրանտն էր նստած, ճռճռոց բարձրացավ: Բոլորս մեկ մարդու պես նրա կողմը դարձանք, իսկ նա՝ Հրանտը, գլուխը կախ գրում էր, ասես բանից անտեղյակ: Գրում էր, միաժամանակ ճռճռացնում:

Ընկեր Վարդումյանը ակնոցը մի կողմ դրեց, կկոցած աչքերով զարմացած նայեց մեզ, հասկանալու համար, թե այդ անախորժ ձայնը որտեղի՞ց է գալիս: Ընկեր Վարդումյանից շատ մենք զարմացանք: Այդ ինչպե՞ս էր Հրանտը գլուխը կախ գրում, մի ձեռքին՝ գրիչը, մյուս ձեռքը տետրակին դրած, բայց ճռճռոցը չէր դադարում:

Ընկեր Վարդումյանը վեր կացավ տեղից և հուզված ասաց.

— Այս ի՞նչ քստմնելի ձայն է:

Բոլորս, իհարկե, լուռ նայեցինք ընկեր Վարդումյանին, բայց ոչինչ չասացինք: Ինչպես ասեինք, թե ով է անողը, համարում էինք, որ դա ընկերոջը մատնել կընշանակեր: Բացի դրանից, ի՞նչ կարող էինք ասել, երբ Հրանտի ձեռքին ոչինչ չկար:

— Սա ի՞նչ քստմնելի ճռճռոց է,— կրկնեց ընկեր Վարդումյանը:

— Երևի ճռիկ է,— ասաց դասարանի ավագը, փորձելով կասկածը հեռացնել մեզանից: Նա նստած էր Հրանտի կողքին:

Դասարանում մի քանիսը բարձրաձայն ծիծաղեցին: Մի պահ ճռճռոցը դադարեց: Բոլորս, բացի ընկեր Վարդումյանից, գլխի ընկանք, որ Հրանտը «ճռճռիկը» դրել է ոտքի տակ, հատակի ճեղքում, և ինքը անմեղ դեմքով շարունակում է գրել:

— Հը՛մ, ճռի՛կ... Ուրեմն, վերցրե՛ք գրիչները,— ասաց ընկեր Վարդումյանը, չգիտես հավատալով Արտոյի ասածի՞ն, թե՞ պարզապես չցանկացավ, որ դասը խանգարվի:— Ուրեմն այսպես... Լսեցե՛ք...

Նա դեռ չէր հասցրել կարդալ կիսատ թողած նախադասությունը, երբ նորից ճռճռոց լսվեց: Գիրքը նորից զայրացած դնելով սեղանին, նա ցածր, բայց զայրացած ասաց.



digitised by A.R.A.R.@

— Ամեն ինչ չափ ու սահման ունի, նույնիսկ անկարգությունը:

— Մենք ի՞նչ մեղք ունենք: Ճռիկ է, ընկեր Վարդ...— նորից մեջ ընկավ Արտոն, որպես դասարանի ավագ, բայց իսկապես որպես Հրանտի պաշտպան և տուժեց:

— Արտավա՛զդ Սարխոշյան, դու, որքան ինձ հայտնի է, դասարանի ավագն ես, այսինքն առաջին դեմքը այստեղ: Եվ պետք է հասկանաս, որ նման դեպքում պետք է ոչ թե միջամտես, այլ օգնես ինձ, իսկ դո՛ւ...

— Ախր, ընկե՛ր Վարդումյան, ես ինչպե՞ս օգնեմ, ես ախր...

— Վերջ,— ձեռքը սեղանին զարկեց ընկեր Վարդումյանը:— Դու այս բոլորը դիտավորյալ ես անում:

Իսկ Հրանտը, իբրև թե անտեղյակ, գլուխը կախ, մի ձեռքին գրիչը պինդ բռնած, մյուս ձեռքը տետրակին, քթի տակ խնդմնդում էր և մեկ-մեկ էլ, ընկեր Վարդումյանին ավելի զայրացնելու համար, ամենալարված պահին ոտքով սեղմում, ճռճռացնում էր:

— Ձայնը այդտեղից է գալիս,— ի վերջո գլխի ընկավ ընկեր Վարդումյանը,— քո կողմից, հարգելի՛ Արտավազդ Սարխոշյան: Եթե քո ընկերները չեն, ուրեմն դու ես:

— Ես չեմ:

— Ուրեմն ասա, թե ով է:

— Ես, ընկե՛ր Վարդումյան, չգիտեմ,— Արտոն շփոթվել էր և աչքով էր անում Հրանտին, որ դադարեցնի:

Հրանտը իբրև թե չէր լսում: Քթի տակ դարձյալ խնդմնդում էր:

— Դո՛ւրս եկ,— ձայնը անսպասելի բարձրացնելով, ընկեր Վարդումյանը մոտեցավ ու կանգնեց Արտոյի գլխավերևը:

Ի՞նչ աներ Արտոն: Մատնիչ համարվել չէր ուզում: Հրանտը իր ընկերն էր: Ստիպված ընկերոջ մեղքը իր վրա առած, գլխիկոր դուրս եկավ դասարանից:

— Գնա՛ ուսմասվարի մոտ և հայտնի՛ր, որ ընկեր Վարդումյանը դուրս է հրավիրել,— դասարանից դուրս եկող Արտոյի հետևից ձայնեց նա:

Պարզ է, որ դրանից հետո ճռիկի ճռտճռտոցը դադարեց, բայց ոչ թե վախից, այլ հաստատելու համար, որ ճռճռացնողը Արտոն էր: Արտավազդ Սարխոշյանի ծնողները դպրոց հրավիրվեցին: Հրանտը բոլորովին վատ չզգաց, որ իր փոխարեն պատժվեց ընկերը:





digitised by A.R.A.R.@

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԲԱՌԸ ՉԶՈՒՅՑՎԱԾ ՉԻՆՎԱՐ Է

**ՄՈՒՅԿ
ՈՏՆԱՄԱՆ
ԿԱՄԲԱԿ
ՄՈՒՃԱԿ
ՀՈՂԱԹԱՓ
ՏՐԵԽ
ՍՈԼ
ՉՈՒՍՏ
ՍԱՐՄՈՒՃԱԿ
ԼԱԳԱՆ
ԵՐԵՍՆԱԿ
ՆԱԼԻԿ
ՄԱՇԻԿ
ԽՈՆԴՈՒՐԱ**

Ի՞նչ կասեք, եթե փողոցով անցնելիս հանդիպեք մի մարդու, որի մի ոտքին կարմիր կոշիկ է, մյուսին՝ մոխրագույն: Հավանաբար կզարմանաք, կժպտաք հեգնանքով և իրքներդ ձեզ կասեք. «Աշխարհում ինչքան ասես տարօրինակ մարդիկ կան»:

Եկեք նույն տեսարանը մտովի փոխադրենք մեր թվականությունից առաջ երկրորդ դարը: Հայոց աշխարհի մայրաքաղաք Արտաշատի Տափերական կոչվող փողոցով մի մարդ է անցնում, որի աջ ոտքին կարմիր կոշիկ է, ձախին՝ մոխրագույն: Հանդիպողները հարգանքով ու ակնածանքով գլուխ են տալիս նրան:

Հիմա դուք կասեք՝ ինչո՞ւ, մի՞թե մեր նախնիներն այդքան անճաշակ են եղել: Չէ՛, սա կապ չունի ճաշակի հետ: Հին Հայաստանում կարմիր կոշիկը եղել է իշխանության նշան, մեծության խորհրդանիշ: Հայոց թագավորը որպես երկրի տեր ու գերագույն իշխանավոր, հագնում էր բացառապես կարմիր կոշիկներ: Հաճախ նա արտոնում էր, որ արքայազուններից որևէ մեկը և նախարարներից ոմանք միմի կարմիր կոշիկ հագնեն: Մեկ կարմիր կոշիկ հագնելը նշան էր, թե այդ մարդը փոխարքա է կամ արժանացել է արքայի բարեհաճությանն ու վստահությանը: Մեր պատմիչներն այդ կարգի անձանց անվանում էին միամույկ, այսինքն՝ մեկ մույկ (կոշիկ) ունեցող: Եթե որևէ միամույկ փորձի երկու կարմիր կոշիկ հագնել՝ կնշանակի նա դավաճանել է տիրակալին և մտադիր է զավթել երկրի իշխանությունը:

Տեսնո՞ւմ եք, թե հնում ինչ ուժ է ունեցել կարմիր կոշիկը, որ մեծ ճարտարությամբ պատրաստում էին խաղախորդած (դաբաղած) կաշուց:

Հայաստանում սկսել են կոշիկ պատրաստել վաղնջագույն ժամանակներից: Մեր հայրենիքը եղել է հին աշխարհի զարգացած անասնապահական երկրներից և ուներ կոշիկի առատ հումք՝ կաշվեղեն (մորթեղեն): Հենց կոշիկ (հնում գրվում էր կավշիկ) բառի արմատը կաշին է:

Հայ կոշկակարների հմտությունը հնուց է գալիս: Պատմիչները հայկական ընտիր կոշիկներն անվանել էին ոսկեզօծ:

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար մարզի Մարտակերտի շրջանի Ջոլատակ գյուղի մոտ, Թավուտ անտառում, ճարտարապետական մի հուշարձան կա, որ կոչվում է Կոշիկ անապատ (վանք): Վանք-անապատը Կոշիկ է կոչվել: Ինչո՞ւ: Այս վանքում շատ ձեռագրեր էին գրում և մագաղաթ-կաշիների կտորտանքը թափում դուրս: Վանքի ճգնավորներից մեկը սկսում է այդ կտորտանքից գեղեցիկ կոշիկներ կարել: Նրա կարած կոշիկների հռչակն այնպես է տարածվում, որ այստեղ կոշիկ առնելու են գալիս նույնիսկ իշխաններն ու արքաները: Այդ պատճառով էլ վանք-անապատն ստացել է Կոշիկ անունը:

Այո՛, կոշիկ կարելը հայերիս մեջ հարգի է եղել է՛ն գլխից: Պատահական չէ, որ մենք նույնիսկ Կոշկակարյան ազգանուն ունենք:



digitised by A.R.A.R.@

Կոշիկն ունի իր մասերի հայերեն գեղեցիկ անվանումները: Ետևի մասը կոչվում է կրունկ, դրա հակառակ կողմը՝ առաջք, վերջինիս ծայրը՝ կտուց (եթե այն սուր է, ապա կոշիկը կոչվում է սրակտուց), ներքևի մասը՝ ներբան, սրա և կրնկի միջև եղած կորագիծը՝ խորշ կամ անկարուրդ, այսինքն այն հատվածը, ուր ընդհատվում է կոշիկի կարը: Վիզը կոչվում է ճիտք:

Կոշիկ բառը շատ հոմանիշներ ունի: Դրանցից են՝ մույկ, ոտնաման, ոտից աման, կամբակ, մուճակ, սանդալ, հողաթափ, տրեխ և նույնիսկ՝ օդ:

ՄՈՒՅԿԸ հասակակից է կոշիկ բառին: Մույկից է առաջացել հայերեն մի ուրիշ բառ՝ մակույկ, որ բառացի նշանակում է մեծ մույկ, այսինքն մեծ կոշիկ, իսկ իմաստով՝ նավակ: Դա վկայում է, որ մույկը ավելի հին բառ է, քան մակույկը: Այս համեմատեք կոշիկն ու մակույկը: Նման են, այնպե՞ս չէ: Գիտեք, կանանցի մի տեսակ կոշիկ կա, որ կոչվում է մակույկ (лодочка): Դա պատահական անվանում չէ, նմանությունը շատ է ակնհայտ:

ՄՈՒՃԱԿ: Այսպես է կոչվում կանանց համար կարված կոշիկը, որն ավելի փափուկ ու նուրբ է լինում: Մուճակն ունի նշատերև զարդ: Կարճ երեսով այս ոտնամանը կոչում են նաև փապուճ:

Հին Հայաստանում բարձրակրունկ կոշիկներ չեն եղել (եթե չհաշվենք, որ թատրոններում դերասանները իրենց կոշիկների տակ փայտե մասեր էին դնում, որպեսզի հանդիսականին բարձրահասակ երևան: Այդ կոշիկները կոչվում էին կոտուրն): Բարձր կրունկներով կոշիկները երևան են եկել ուշ միջնադարում: Դրանց հայրենիքը Փարիզն է: Բայց ինչո՞ւ պիտի կինը իր կրունկները բարձրը պահի և մարմնի ծանրությունը հենի ոտքերի թաթերի վրա: Ամեն ինչ սկսվել է փողոցների կեղտոտությունից: Փարիզի փողոցների մեծ մասը սալահատակված չէր և մարդիկ մի փողոցից մյուսն անցնելու ժամանակ երբեմն խրվում էին ցեխի մեջ և դուրս գալիս ամբողջովին կեղտոտված: Եվ ահա մի քանի հնարագետ կոշկակարներ ոտքը գետնից բարձր դնելու համար հնարեցին բարձր կրունկները, որ հարմար միջոց էր ցեխոտ փողոցներով անցնելու համար: Բոլոր փարիզեցիները, կին թե տղամարդ, սկսեցին բարձր կրունկներով կոշիկներ հագնել: Բարձրակրունկ կոշիկները նորաձևությունների մայրաքաղաք Փարիզից տարածվեց աշխարհի բոլոր կողմերը: Հետագայում տղամարդիկ դեն նետեցին իրենց բարձրակրունկները և հագան սովորական կոշիկներ: Իսկ կանայք հավատարիմ մնացին բարձր կրունկներով կոշիկներին, իհարկե, ոչ թե չցեխոտվելու, այլ նուրբ երևալու համար:

ՈՏՆԱՄԱՆ, ոտից աման: Այդպես է կոչվում ամեն մի կոշիկ: Եվ դա հասկանալի է, ամեն տեսակ կոշիկ ինքնին ոտքի աման է:

ԿԱՄԲԱԿ: Հնում այսպես են կոչվել արքաների համար կակուղ կաշվից պատրաստված կոշիկները:

ՍԱՆԴԱԼ: Կոշիկի տեսակ, որ հայտնի է շատ հնուց: Այդպես են կոչվել հատկապես թեթև կոշիկները, որոնց որոշ տեսակները պատրաստում են փայտից:

ՀՈՂԱԹԱՓ: Սանդալի տարատեսակ՝ հատկապես տանը գործածելու համար: Հողաթափ է նաև չմուշկը:

ՏՐԵԽ: Կաշվից պատրաստված սովորական ոտնաման, որ հագնում են գյուղում: Տրեխները ունեն կապիչ, որ գրական հայերենում կոչվում է խրաց: Դաշտ ու ձորում շարժվելու, ոլոր-մոլոր ճամփաներով գնալու համար տրեխն ավելի հարմար հագնելիք է:

ՕԴ: Մտիր կոշիկի խանութ և վաճառողին ասա.

— Տվեք ինձ մի զույգ օդ:

— Ի՞նչ,— զարմացած կհարցնի նա:

— Օ՛դ:

Վաճառողը ձեզ կդնի խենթի տեղ: Մեր օրերում ոչ մի հայ մարդ կոշիկին օդ չի ասում: Բայց անցյալում ասել են և դա բնական է հնչել: Իսկ ինչո՞ւ են ասել: Բանն այն է, որ այդ բառը հիմա է օդ հնչում: Հնում հավանաբար այն հնչել է ոդ, ոտ, այսինքն ոտք: Զարմանալու բան չկա, ոտքի ամանի փոխարեն կարճ ասել են ոտ, որ մեզ է հասել օդ գրությամբ:

Նոր ժամանակներում են ստեղծվել և արդեն կիսով չափ մոռացության տրվել կոշիկի հետևյալ անվանումները՝ սոլ, չուստ, սարմունակ (վերնակոշիկ), լագան (ձյան վրա քայլելու համար) երեսնակ, նալիկ (բաղնիքի), մաշիկ, խոնդուրա (հնամաշ), հյուսվածքակոշիկ, երկարաճիտ սապոգ և այլն: 20—25 տարի առաջ կոշիկի վրայից ռետինե ոտնաման էին հագնում, որ կոչվում էր կրկնակոշիկ: Դա կոշիկը պաշտպանում էր խոնավությունից ու ցեխից: Եվ թեժ բանավեճեր էին գնում, թե ինչպես կոչեն այն՝ կրկնակոշի՞կ, գալոշ, թե՞ սարմունակ: Հիմա այդ տեսակ ոտնաման չեն գործածում և կրկնակոշիկ բառը մնացել է բառարանների «չորս պատերի մեջ» անգործության մատնված: Չես կարող ասել, թե միշտ էլ այդպես կմնա: Մեկ էլ տեսար դուրս եկավ և գործածական դարձավ մի նոր իմաստով:



digitised by A.R.A.R.@

ԱԼԵՔՍԵՅ ՍՏՈԼՐԻՆ

# ՉՈՐՍԻՆ ԳՈՒՄԱՐԱԾ

Մեր տեղերում արդեն նստած էինք, երբ դուռը լայն բացվեց և գնդակի նման դասարան նետվեց Միշկա Բոնդարը։

— Աշխարհագրություն չի՛ լինելու,— դեռ շեմից հայտնեց նա։

— Ուռռա՜,— գոռացինք մենք ուրախ-ուրախ։

Ընդհանուր հրճվանքը հեշտ է բացատրել. աշխարհագրության դասը վերջինն էր, հետևաբար բացառված չէր, որ մեզ տուն թողնեին։ Միայն կզգուշացնեին՝ արագ և կազմակերպված, ոտքերի թաթերի վրա դպրոցից դուրս գալ։

— Ուսուցչուհին հիվանդացել է,— բացատրեց Միշկան, հենց որ շունչը տեղն եկավ։

Անհարմար լռություն տիրեց։ Հիմա արդեն ամաչում էինք մեր արարքից. ախր բոլորս շատ ենք հարգում Թամարա Պավլովնային, որի յուրաքանչյուր դասը հետաքրքիր ճամփորդություն է դեպի անհայտը, և խնդրեմ... այսպիսի անտեղի ուրախություն։ Այս Միշկան էլ իսկական արյուն պղտորող է։ Նա միշտ...

— Բարև ձեզ,— լսեցինք մեր նոր դիրեկտորի ցածր ձայնը։

Օլեգ Իվանովիչը բարձրահասակ է, նիհարավուն, թուխ մազերով, սևեռուն հայացքով, երբ նայում է, կարծես ռենտգենով է քեզ անցկացնում։ Եվ ի՜նչ պահանջկոտն է։ Ինչ դաս էլ լինի, առաջին հերթին հետաքրքրվում է գիտելիքներիդ որակով և տրամաբանորեն մտածելու կարողությունովդ. այնպիսի մի հարց կտա ըմբռնողությունդ ստուգելու, որ իսկույն չես պատասխանի։

— Բացեք դասագրքերն ու օրագրերը,— սեղանի առջև նստելով և դասամատյանը բացելով, ասաց դիրեկտորը,— այսօր դասը ես եմ անցկացնելու...

Բոլորս ակամայից կծկվեցինք։ Ես էլ գլուխս կրիայի պես ներս քաշեցի, թեև երբեք վախկոտ չեմ եղել։ Բանն այն է, որ Օլեգ Իվանովիչը անխոնջ հետևում էր, որպեսզի մենք բարձրացնենք մեր գիտելիքների մակարդակը, չբավարարվենք ձեռք բերածով։ Արդեն մի դասարանում չէր, որ նա գերազանցիկներին «4» կամ նույնիսկ «3» էր նշանակել, իսկ միջակներին՝ էլ չխոսենք... Դրա համար բոլորս վախից լռել էինք։

— Ո՞վ քարտեզի վրա ցույց կտա Եվրոպայի գետերը և կբնութագրի դրանք,— հարցրեց Օլեգ Իվանովիչը և հենվելով աթոռի թիկնակին, սկսեց ուշադիր, զննող հայացքով դիտել բոլորիս։

Այս հարցի մեջ կարծես ոչ մի հետին միտք չկար, բայց և այնպես... Նույնիսկ գերազանցիկները նստած էին շունչները պահած և աչքերը ցած գցած։ Եվ ո՞վ սիրտ կաներ փորձության ենթարկվել, մանավանդ երբ ինքը՝ Օլեգ Իվանովիչը աշխարհագրագետ էր։

Լռությունը շարունակվում էր, և ես ըսկսեցի անհարմար զգալ, չէ՞ որ դիրեկտորը նոր մարդ է։ Կարող է մտածել, որ այստեղ միայն տգետներ են հավաքված։ Այդ դեպքում ինչո՞ւ են պիոներական այս ջոկատին աջթևայինի կոչում տվել, պատվո դրոշով պարգևատրել, կըմտածեր նա։ Ահա՛, այն կախված է գրատախտակի կողքին։ Բայց սա դեռ չարիքի կեսն էր։ Իսկական չարիքն այն էր, որ մենք մեր լռությամբ խայտառակում էինք Թամարա Պավլովնային։

Ծուռ եմ գալիս դասարանի առաջին աշակերտուհու՝ Նինա Գորդուսի կողմը, իսկ նա ոչ կենդանի է, ոչ՝ մեռած։ Թվում է նույնիսկ չի շնչում։ Սովորական դասերին նա միշտ առաջինն է ձեռք բարձրացնում։ Հիմա ինչո՞ւ է լռել։

Ուսուցչի սեղանի ուղիղ դիմացը խեցգետնի պես կարմրած նստել է «Դասարանի պատվի համար» մեր պատի թերթի խմբագիր Իգոր Կոլյադան։ Ճիշտ է, «հինգեր» նա այնքան էլ հեշտ չի ստանում, ինչպես Նինկան. երկար է նստում դասեր պատրաստելիս։ Բայց եթե չվախենար, կարող էր լավ պատասխանել։

— Ձե՛ռք բարձրացրու,— մտովի բղում եմ մեր օղակավարուհի Մարիյկա Ստուպակին, որը դեռ վերջերս էր մեզ բացատրում «պիոներ» բառի իմաստը։ Պիոները միշտ և ամենուր առջևում պետք է լինի, ասում էր նա։ Բայց Մարիյկային հիմա չես բարձրացնի։ Նա միայն դժկամությամբ ուսերը թոթվեց՝ ինձ հանգիստ թող։ Ա՜յ քեզ դրություն. իսկ դիրեկտորը սպասում է, զննում յուրաքանչյուրիս, ըն-



digitised by A.R.A.R.@


Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

կատի է առնում: Եվ թվում է՝ դիտմամբ չի կանչում ցուցակով:

Վերջին հույսս աշխարհագրության խմբակի ավագ, Թամարա Պավլովնայի սիրելի աշակերտ Վասիլի Լուգովոյն է: Նա մաքուր գերազանցիկ չէ, բայց այս առարկան գիտի հինգ մատի պես, որովհետև դեռ օրորոցից երազում է ճանապարհորդությունների մասին: «Գրատախտակին մոտեցիր, փրկիր դրությունը» երկտող եմ գրում նրան: Ի պատասխան այս «գործիչը» բացասաբար գլուխն է շարժում:

«Սպասիր, սպասիր,— կայծակի պես մի միտք է շամփրում ուղեղս, որից ամբողջ մարմնովս տաքություն է անցնում:— Այդ ինչո՞ւ եմ ես ուրիշների ետևում թաքնըվո՞ւմ: Ինչո՞ւ եմ ինչ-որ մեկի վրա հույսս դրել: Չէ՞ որ պիոներական հավաքին պայմանավորվեցինք՝ մեկը բոլորի համար, բոլորը՝ մեկի»:

Ճիշտ է, այսօր, ինչպես սպորտսմենները են արտահայտվում, լավ ձևի մեջ չեմ: Դասը ընդամենը մեկ անգամ եմ կարդացել, որովհետև անցած դասին Թամարա Պավլովնան արդեն ինձ հարցրել էր: Գիտեք, էլի՛, ինչպես է լինում... աշխարհագրությունից ես այնքան էլ ուժեղ չեմ... Մաթեմատիկայից եմ միայն «հինգեր» ստանում. մաթեմատիկան սիրում եմ: Ա՛յ, այդտեղ արդեն դիրեկտորին կլաս ցույց կտայի: Ուրեմն ի՞նչ անեմ, ռիսկի՞ դիմեմ, հը՞: Որտե՞ղ կորուստ չենք ունեցել... Հիմա կարևորը սկսելն է, որպեսզի այս չարագուշակ լռությունը խախտվի, դասարանը դուրս գա շփոթահար վիճակից, իսկ հետո, որևէ կերպ... եթե նույնիսկ «2» կամ «1» ստանամ, գոնե հետո ինքս ինձ չեմ մեղադրի փոքրոգության մեջ, կկարողանամ ուղիղ նայել համադասարանցիներիս աչքերին:

Դիրեկտորը նայեց ձեռքի ժամացույցին և կրկնեց հարցը: Հասկացա, որ լռությունն խաղալ այլևս ոչ մի կերպ հնարավոր չէ: «Ինչ լինում է թող լինի,— որոշում եմ վերջապես:— Ամբողջ կրակն ինձ վրա կընդունեմ, չէ՞ որ ռազմաճակատում էլ ինչ-որ մեկը առաջինն է նետվում մարտի»:

— Թույլ տվեք,— շրխկոցով տեղից ելնում եմ, ասես թե հրացան եմ կրակում,— տեղից պատասխանե՞մ, թե՞ դուրս գամ գրատախտակի մոտ:

Դիրեկտորը ինձ նայեց գնահատող հայացքով և, կարծես, նույնիսկ ուրախացավ:



digitised by A.R.A.R.@

Աշակերտները էլ թեթևացած շունչ քաշեցին:

— Ազգանունդ ի՞նչ է,— հարցրեց Օլեգ Իվանովիչը: Բայց երբ նայեց դասամատյանին, հոնքերը զարմացած վեր բարձրացրեց՝ այնտեղ հեղինակությունս բարձրացնող և էջը զարդարող գնահատականներ չունեի: Դեհ, ինչ արած, իմ ունեցածն էլ դա է...

— Խնդրեմ,— ցուցափայտը ձեռքս տալով, Օլեգ Իվանովիչը մատնացույց արեց քարտեզը:

Մոտենում եմ գրատախտակին, ոտներս կարծես իմը չլինեն, որոշ ժամանակ լռում եմ, մտքերս եմ ժողովում և ապա, ինչ-որ ճաքած, օտար ձայնով սկսում.

— Եվրոպայում շատ գետեր են հոսում՝ Սենը, Հռենոսը, Դանուբը, Դնեպրը, Իվոտկան...

Առաջին գետերը ցույց տվեցի, բայց երբ հերթը հասավ մեր Իվոտկային, դեմ առա: Չեմ կարողանում գտնել կիսագնդերի քարտեզի վրա, և վերջ: Ա՜յ քեզ փորձանք: Ախր հաստատ գիտեմ, որ նա սկիզբ է առնում Կազաչի ձորակի աղբյուրակից, կտրում անցնում է մեր շրջանը և թափվում Դեսնայի մեջ, Դեսնան՝ Դնեպրի, Դնեպրն էլ... Մի՞թե մոռացել են քարտեզի վրա նկարել:

— Լա՛վ,— մեծահոգաբար ընդհատում է իմ փնտրտուքը Օլեգ Իվանովիչը:— Առա՛ջ անցիր:

— Մեծ գետերն ինձ այնքան էլ դուր չեն գալիս,— խրախուսված դիրեկտորի խաղաղ տոնից, խոստովանում եմ ես:— ափերը հեռու են, մերկ: Եվ նրանց վրա որքա՜ն նավակներ, յաստանավեր, շոգենավեր կան... Սարսափելի է: Իսկ մեր Իվոտկան բոլորովին այլ է. հոսում է վառ կապույտ ժապավենի պես մարգագետինների, անտառների, ոսկեգույն արտերի միջով, ամբողջովին կանաչով շրջապատված, կարծես պսակի մեջ լինի: Իսկ ինչպե՛ս է փոխվում,— արդեն աշխուժացած վրա եմ տալիս, որովհետև գրատախտակի մոտ արդեն ինքս ինձ գտել եմ:— Մի տեղ արագ վազում է, ուղղակի զրնգում, իսկ քիչ այն կողմ լայն ծփանք է տալիս:

Տեսնեմ ընկերներս կենդանացել են, գլուխները բարձրացրել, շտկվել են: Դիրեկտորն էլ ուշադիր լսում է, չի ընդհատում, չնայած ես դասագրքով չեմ պատմում, այլ՝ գիտեցածս, այն, ինչ սիրում եմ, ինչի համար հոգով ցավում:

— Մի բան վատ է. մեր Իվոտկայի մոտ կոլխոզը անասունների համար ամառային ճամբար է կառուցել: Անձրևների ժամանակ գետի մեջ են թափվում անասունների աղտեղությունները, դրա հետևանքով սկզբում ոչնչացան խեցգետինները, որոնց այստեղ թիվ-համար չկար, ապա սկսեց ոչնչանալ ձուկը...

Օլեգ Իվանովիչը աչքերը կկոցած ինձ էր նայում:

— Ճիշտ է, մենք էլ ենք վնաս հասցնում Իվոտկային: Հրեն,— ցույց եմ տալիս շիկագլուխ, պեպենոտ երկտարեցի Ֆեդկա Չումակին,— վարժվել է թույնով ձուկ սպանելուն: Հացին ինչ-որ, ներեցեք, կեղտ է խառնում...

Դանդալոշ Ֆեդկան դիրեկտորի սևեռուն հայացքի տակ անշնորհք ձևով տեղից ելավ և այնպես կարմրեց, որ դեմքի վրա սպիտակ մնացին միայն հոնքերն ու արտևանունքները:

— Էդ ե՞րբ է եղել,— կնճռոտվելով կոպտեց նա:

— Դու մինչև հիմա էլ կփչացնեիր, բայց ես հասցրի վզակոթիդ, հիշո՞ւմ ես:

— Այ քեզ բա՜ն,— բոլորովին հիասթափված խոսեց դիրեկտորը:— Ինչո՞ւ այդպես:

— Ախր նա խոսք չի՛ հասկանում: Ճիշտ ինչպես Զոյկա Ուսիկը, որը միշտ իր այծը կապում է գետափին, մատղաշ տնկիների մեջ...

Տարված չնկատեցի էլ, թե ինչպես եմ անցել այլ թեմայի՝ մարդու կողմից բնության վերափոխելուն: Իսկ Օլեգ Իվանովիչը հանգիստ և ուշադիր լսում է, նույնիսկ ինչ-որ գրառումներ անում բլոկնոտում:

Հիմա արդեն ինձ լրացնել ցանկացողները շատացան: Պատկերացնում եմ ինչպես կուրախանա Թամարա Պավլովնան մեր, թեկուզև ուշացած, խանդավառությունից:

— «Չորս»,— հայտարարեց դիրեկտորը բարձր, որպեսզի բոլորը լսեն:— Պլյուսով:

— Մի՞թե: Իսկ ես կարծում էի...

— Համարձակության համար,— բացատրեց Օլեգ Իվանովիչը, վերադարձնելով օրագիրս, մեծ, շատ գեղեցիկ «չորսով», դիմացը մի կոկիկ պլյուս ավելացրած:— Նրա համար, որ անտարբեր չես,— շեշտեց փոքր դադարից հետո:— Հասկացա՞ր,— հետո դարձավ դասարանին.— Որովհետև պասսիվությունը, անտարբերությունը ամենամեծ չարիքն է:

Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

# ՀՈՎԻԿ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ ՍԽՐԱՆՔԸ




ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը «Խեղդվողներին փրկելու համար» մեդալով պարգևատրեց (ետմահու) Թալինի շրջանի Վերին Բազմաբերդ գյուղի 6-րդ դասարանցի Հովիկ Վարդգեսի Վարդանյանին:

Վերին Բազմաբերդը լեռնային գյուղ է: Առաջ գետ կամ ջրավազան չի ունեցել, որտեղ գյուղի երեխաները լողալ սովորեին: Այսօր այդպիսի ավազան կա՝ ջրամբարը, որը նախատեսված է կոլտնտեսության հողերը ոռոգելու համար: Հասկանալի է, ջրամբարում լողալը խստիվ արգելվում է: Բայց գայթակղությունը մեծ է: Այստեղ շատերը լողալ սովորեցին: Տղաներից մի քանիսը նույնիսկ «ծայրեծայր» կտրում են «լիճը», յուրօրինակ մրցումների հաղթողներ ու ռեկորդակիրներ դառնում:

Իր հասակակիցների մեջ ամենալավ լողորդը Հովիկն էր: Բայց Հովիկը միայն դրանով չէ, որ աչքի էր ընկնում: Նրան ամենահաս էին անվանում: Օգնում էր բոլորին: Եթե մի գործ էր ձեռնարկում, անում էր հիմնովին, այնպես, որ կշտամբելու տեղ չլինի: Գյուղում հաճախ էին ասում. «Եթե բոլորը Վարդգեսի Հովիկի նման բարի սիրտ ունենային»...

Բարի սիրտ: Երևի այլ կերպ դա կարելի է կոչել այսպես՝ մարդ, որն անտարբեր չէ իրեն շրջապատող աշխարհի ու մարդկանց նկատմամբ:

Շոգ օր էր: 8-ամյա Հակոբը գնացել էր «մեծերի» հետ ջրամբար՝ լողալու: Լողալ չգիտեր: Բայց հասնել «լիճը» ու չլողա՞լ: Որոշեց թրջվել գոնե ափին մոտ: Ընկերները չնկատեցին, թե ինչպես Հակոբը հեռացավ ափից: Նկատեցին միայն այն ժամանակ, երբ փոքրիկը հուսահատ ճիգեր էր գործադրում ափին մոտենալու...

Իսկ Հովիկը գառներն էր տարել արոտ՝ ջրամբարից քիչ հեռու: Հարկավոր էր օգնել ծնողներին: Հայրը մեխանիզատոր է և շատ է զբաղված: Խոտհավաք է: Ինչպես ասում են՝ քիթ սրբելու ժամանակ չկար: Ինչո՞ւ էր գառները ջրամբար տարել: Որովհետև շատ էր սիրում լողալ և լավ էր լողում, մինչ այդ խեղդվելուց փրկել էր երկու երեխայի: Նրանց էլ խնդրել էր այդ մասին գյուղում չասել, տանն իմանային՝ իրեն ջրամբար չէին թողնի... բացատրել էր ընկերներին:

— Խեղդվո՜ւմ է, Հակոբը խեղդվո՜ւմ է...

Հովիկը լիճ հասավ, ընթացքում մերկանալով: Առանց երկմտելու նետվեց ջուրը և լողաց դեպի ուժասպառ Հակոբը:

Հովիկին կհաջողվեր Հակոբին ափ հասցնել, եթե քամին չուժեղանար: Հովիկն ուժեղ էր ու համառ: Նա չէր կարող օգնության չհասնել թույլին, վտանգի մեջ գտնվողին: Եվ մաքառո՜ւմ էր, մաքառո՜ւմ էր... Մաքառեց մինչև իր վերջին շունչը:

Երբ մարդիկ դեպքի վայրը հասան, արդեն ուշ էր:

Հովիկը Հակոբին ափ հասցնել չէր կարողացել, բայց չէր էլ լքել:

ՊԱՎԵԼ ՂՈՒԿԱՍՅԱՆ



digitised by A.R.A.R.@



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ՍՓՅՈՒՌՔԱՀԱՅ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

**ԳԱԼՈՒՍՏՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՍԱՆԵՐԻ ՆԿԱՐՆԵՐԸ (ՈՒՍՈՒՑԻՉ՝ ՄԱՐԳԱՐԻՏ ՊԱԼԹԱՅԱՆ) ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆՆ Է ՏՐԱՄԱԴՐԵԼ ԿԱՀԻՐԵԻ «ԱՐԵՎ» ԹԵՐԹԻ ԽՄԲԱԳԻՐ ԱՎԵՏԻՍ ՅԱՓՈՒՋՅԱՆԸ։**



**ԱՐԱՄ ԴԻԼՓՅԱՆ**
**5-րդ դաս.,**



**ՍՈՒՋԱՆ ՍԵՄԻՋՅԱՆ**
**8-րդ դաս.,**

**ՍԻԼՎԱ ԿԱՊԵՅԱՆ**
**5-րդ դաս.,**



**ՆՈՐԻԿ ԳՈԼՈՅԱՆ**
**5-րդ դաս.**





digitised by A.R.A.R.@





ՄԱՐԳԱՐԻՏ ԹԱՀԹԱՊՐՈՒՄՅԱՆ
5-րդ դաս.,

ԱՐԱՔՍԻ ԴԻԼՓՅԱՆ
8-րդ դաս.,

ՆՈՐԱՅՐ ՄԽՏԻԿՅԱՆ
1-ին դաս.

ԱՐՄԵՆ ՉԵՉԴԵՆՅԱՆ
4-րդ դաս.,









digitised by A.R.A.R.@

ՀԱՄԼԵՏ ԱՂԱԳՅՈՒԼՅԱՆ

# Ալիխանյան եղբայրներ


Ի. Կուրչատով, Ար. Ալիխանյան, Ա. Իոֆֆե. Լենինգրադ, 1930 թ.

(սկիզբը՝ № 3-ում)

Ալիխանյանների ընտանիքը Թիֆլիսից ամռանը հաճախ էր գնում Սրբի լեռ կոչվող վայրը: Մի գեղատեսիլ բարձրավանդակ էր դա լեռների գրկում, որի ճանապարհն ու ամառանոց-բնակատեղին դեռ շատ վաղուց կառուցել էին նրանց պապերը:

Աներևակայելի էր եղբայրների և նրանց քույրերի՝ Արաքսյայի ու Ռուզանի ուրախությունը, երբ եզներ լծած սայլը, ծանր բեռներով, դանդաղ առաջ էր շարժվում: Անդնդախոր կիրճերից ճանապարհը ելնում էր վեր՝ ձյունաթույր լեռնագագաթներն ու մխրճվում երկնքի կապույտ անհունի մեջ:


Ի. Կուրչատով, Ար. Ալիխանյան, Ֆոկ. 1939 թ.

Հինգերորդ օրվա իրիկնամուտին, բոցկլտացող խարույկների լույսերից վերջապես փայլատակում էր Սրբի լեռը: Ցածում ծափ ու ծիծաղի, երաժշտության ու երգի հնչյունները խառնվում էին մատաղացու գառների մայունին:

Այդ հովտից, եղբայրների պատանեկությունը ձգվում է հեռու, մինչև Հաղպատ, ուր բնակվում էին հայր Իսահակի ազգականները՝ մի մեծ գերդաստան, բոլորն էլ՝ հողի ու աշխատանքի մարդիկ:

Նրանց տներից ցած՝ Դեբեդ գետի ջրերը մռնչալով բախվում էին ժայռոտ ափերին: Տների երկար պատշգամբները կախված էին կիրճի վրա, և եղբայրներին թվում էր, ուր որ է կգահավիժեն ցած՝ փրփրադեզ ջրերի մեջ:


Առաջին քարավանը դեպի Արագած. 1941 թ.

Թիֆլիսից Հաղպատ երթևեկելիս, հայր Իսահակը որդիներին տանում էր իր հետ: Տեղ հասնելուն պես, նա դանդաղեցնում էր շոգեմեքենայի ընթացքը և լեռների անդորրը խախտում շչակի գիլ սուլոցով: Ժայռերի մեջ ծվարած տներից պատշգամբ էին ելնում նրա ազգականները և ողջունում, թափահարում էին ձեռքերը՝ տուն հրավիրում: Որպես պատասխան, հայրը ձայնում էր ցածից.

— Գինի՛, գինի հանեք մեծ տակառից...

Հայր Իսահակի ազգականները անջնջելի տպավորություն թողեցին եղբայրների վրա: Բոլորը կապուտաչյա էին, շիկահեր, ամրակազմ:


Տիեզերական ճառագայթների հետազոտման Արագածի առաջին կայանը. 1941 թ.



digitised by A.R.A.R.@

Անսահմանորեն երկար թվացող նրանց պատըշգամբներում եղբայրներին պարուրում են աստղային անուրջները։ Թևավոր զամբիկներով նրանք թռչում, սուրում են ծովից երկինք ելնող արևին ընդառաջ։ Ցածում՝ խուլ դղրդյունով, հառաչում, գալարվում է Դեբեդը։ Լեռան գագաթին, լուսնի շողերում հայտնվում են Հաղպատի միջնադարյան դպրության մթամած, խորհրդավոր վանքերը։ Բայց դրանց հզոր և վեհաշուք կամարների տակ վառվող մոմերի դժգույն լույսը ետ էր մնացել եղբայրների թևավոր երազներից։

Նրանք երազում էին ուսումնասիրել բնական գիտությունները, հատկապես՝ քիմիան, ֆիզիկան ու մաթեմատիկան։

Հորաքրոջ տան ներքնահարկում, եղբայրների քիմիական փորձերը հաճախ ավարտվում էին ուժեղ պայթյուններով։ Նրանք իրենց փորձերի վտանգավորությունը հասկանալով, այնուհանդերձ շարունակում էին հետազոտել քիմիական ռեակցիաները։

Պայթյունի ձայնը լսելուն պես, ահաբեկված ներքնահարկ էին վազում մայրը, հորաքույրը, քույրերն ու բակի բնակիչները։ Բայց ոչ ոք չէր համարձակվում ներքնահարկ մտնել...

Տանջալից, սրտամաշ լռության մեջ, վերջապես դանդաղ ճռռում էր ներքնահարկի ընկուզե հաստ դուռը։ Դռան շեմին՝ ծխե ամպերի միջից, հազիվ նշմարվում էին փոքրիկ պքիմիկոսների սև ուրվականները։

Արևի պայծառ լույսից կկոցելով աչքերը, նրանք դուրս էին ելնում, ափսոսանքով կըրկնելով.

— Չեղավ, այս անգամ էլ...

Թիֆլիսի առևտրական դպրոցի յոթերորդ դասարանում, Աբրահամը մտերմանում է Ալեքսանդր Շահվերդյանի, Հրանտ Մալխասյանի և Ստեփան Թարխարարյանի հետ։

Նրանք զրուցում, վիճաբանում էին արվեստի ու գիտության տարբեր հարցերի շուրջը։ Ալեքսանդրի և Ստեփանի հետ եղբայրները հաճախ գնում էին Հրանտենց տուն և այնտեղ շարունակում զրույցներն ու վեճերը։

Ալիխանյան եղբայրների տրամաբանական հետևողականությունը հիացնում էր Հրանտի հորը՝ մեծանուն գիտնական Ստեփանոս Մալխասյանցին։

Եղբայրների շփումը Ստեփանոս Մալխասյանցի հետ, անհետևանք չանցավ։ Տարվելով հայ ժողովրդի դարավոր մշակույթով և նրա հերոսական պատմությամբ, Աբրահամը գրում է իր առաջին գիտական աշխատությունը՝ «Հին Եգիպտոսը և Հայաստանը», որտեղ նա տեղադրում է հին Հայաստանի իր գծագրած քարտեզը։

Մեծավաստակ գիտնականը ծանոթանալով այդ գործին, բավական բարձր է գնահատում երիտասարդ Աբրահամի հասուն և խորաթափանց գաղափարները։



Առևտրական դպրոցն ավարտելուց հետո, Աբրահամը 1922 թվականին ընդունվում է Թիֆլիսի պոլիտեխնիկական ինստիտուտի քիմիայի ֆակուլտետը։

Քիմիայի ֆակուլտետում Աբրահամը ծանոթանում է ռենտգենյան ճառագայթների զարմանալի հատկություններին և ուրանային աղերից ռադիոակտիվ ճառագայթման երևույթին, որ բացահայտել էր Անրի Բեկկերելը։

Ռադիոակտիվության բնագավառում նրան հայտնի են դառնում Մարիա Սկլադովսկայայի և նրա ամուսին՝ Պիեռ Կյուրիի աշխատանքները։ Աբրահամը ուսումնասիրում է ատոմային համակարգերի կառուցվածքին վերաբերող, Ջոզեֆ Թոմսոնի և Ռեզերֆորդի ստեղծած իրարամերժ մոդելները, ինչպես և ջրածնի ու ջրածնակերպ ատոմների կառուցվածքը մեկնաբանող, Նիլս Բորի տեսությունը։ Նա ոգեշնչվում և հիացմունք է ապրում լույսի քվանտային այն տարօրինակ հատկությամբ, որ իրենց աշխատանքներով բացահայտել էին Մաքս Պլանկն ու Ալբերտ Այնշթայնը։

Աբրահամը գիտակցում է, որ հյուլեական աշխարհի հետազոտման հազարամյա պատմության մեջ սկսվել է բոլորովին մի նոր ժամանակաշրջան, որը գալիս էր հեղաշրջելու ողջ աշխարհաշինության դասական ճանաչված պատկերացումները։

Իսահակ Նյուտոնի ժամանակներից ի վեր Քեմբրիջը դարձել էր բնական գիտությունների ուսումնառության՝ հետազոտման խոշորագույն կենտրոն։ Այստեղ էր գտնվում նաև Կավենդիշյան նշանավոր լաբորատորիան, որ ղեկավարում էր Աբրահամի կուռքը՝ միջուկային ֆիզիկայի հիմնադիր, աշխարհահռչակ Էռնստ Ռեզերֆորդը։ Եվ Աբրահամը երազում էր մեկնել Անգլիա՝ ուսումը շարունակելու Քեմբրիջի համալսարանում։ Նրա այս ցանկությունը սաստկացավ, երբ Ստեփանոս Մալխասյանցի գրադարանում, Արտեմի հետ, հայտնաբերեց Այնշթայնի «Հարաբերականության հատուկ և ընդհանուր տեսություն» գիտահանրամատչելի գիրքը։

Տարածության և ժամանակի վերաբերյալ Այնշթայնի նոր գաղափարների հստակությունը, ինչպես և նյութական մարմինների



digitised by A.R.A.R.@



Տիեզերական ճառագայթների հետազոտման Արագածի երկրորդ կայանը. 1941 թ.



Ձախից՝ Ժոլիո-Կյուրի, Ի. Կուրչատով, Դ. Սկոբելցին, Լ. Արցիմովիչ, Ար. Ալիխանյան. 1957 թ.



Ձախից՝ Հ. Մալխասյան Ար. Ալիխանյան, Ա. Պետրոսյանց, Ա. Ալիխանյան. 1960 թ.



Ձախից՝ Նիկիտին, Ա. Ալիխանյան, Ար. Ալիխանյան, Լ. Լանդաու. 1960-ական թվականներ

էներգիայի ու զանգվածի համարժեքության նրա հայտնագործած օրենքը, խորապես ցնցեցին եղբայրներին: Այդ օրենքն արտահայտող մաթեմատիկական բանաձևով, Աբրահամը մի քանի րոպեի ընթացքում հաշվեց, որ մեկ կիլոգրամ նյութը ավելի շատ էներգիա է պարունակում, քան կառաջանա քսանհինգ հազար տոննա թրոթիլի պայթյունից:

Նյութը՝ էներգիայի փոխակերպվելու այդ կապը սաստիկ ոգեշնչող ազդեցություն գործեց եղբայրների վրա:

Մի՞թե արեգակից անջատվող հսկայական էներգիան փոխակերպում չէ, մատերիայի փոխակերպում՝ լույսի և ջերմության:

— Ահա, վերջապես այն, ինչ պնդում էր Տորիչելլին,— ասաց Աբրահամը եղբորը,— «Էներգիան այնպիսի նուրբ բնույթի քվինտէսենցիա է, որ չի կարող պարունակվել և ոչ մի այլ անոթում, նյութական իրերի նվիրական ուբստանցիայից բացի»...

Կանա՞չ պայթյո՞ւն...

Կգա օրը, երբ նրանք կտիրանան նյութական իրերի նվիրական սուբստանցիայում պարունակված էներգիայի առեղծի պաշարին: Եվ հողագունդը կփթթի հավիտենական գարունների մեջ:

Դեպի Անգլիա՝ Քեմբրիջ, աշխարհահռչակ Էռնստ Ռեզերֆորդի լաբորատորիա: Դեպի նյութական իրերի նվիրական սուբստանցիայի հավիտենական խորհուրդ: Դեպի հյուլեական աշխարհի հետազոտման կենտրոն, որտեղ դրվում են ատոմային և միջուկային ֆիզիկայի փորձարարական ու տեսական հիմքերը:

Բայց Քուռ գետի ափին, զբոսաշրջիկ նավերի ուղևորներին նա դեռ տոմս պիտի վաճառեր: Ապա աշխատանքի պիտի անցներ ավտոպահեստում՝ նախ որպես վարորդի օգնական, ապա հեռախոսավար:

Աբրահամը դեռ կփորձի ըմբռնել Նյուտոնյան մեխանիկայի և Մաքսվելյան էլեկտրադինամիկայի հիմքերը: Կփորձի գտնել այդ տեսությունների միջև եղած այն հակասությունները, որոնք լուծեց Այնշթայնը, ստեղծելով նախ հարաբերականության հատուկ, ապա ընդհանուր տեսությունները: Անքուն գիշերներ լուսացնելով, նա վերջապես կհասկանա, որ քսաներորդ դարի նորագույն հայտնագործությունները կհանգեցնեն նյութի կառուցվածքի նոր տեսության ստեղծմանը, ճանապարհ հարթելով արևային պրոբլեմի լուծման համար:

Թիֆլիսի պոլիտեխնիկական ինստիտուտի մաթեմատիկայի պրոֆեսոր Ռազմաձեի երաշխավորագրով և Վրաստանի ժողովրդական լուսավորության կոմիսար Կանդելակիի հանձ-



digitised by A.R.A.R.@

նարարական ուղեգրով, Աբրահամը իր ուսանողական գործերն ուղարկում է Պետրոգրադի պոլիտեխնիկական ինստիտուտ: Եվ դառնում է Պետրոգրադի պոլիտեխնիկական ինստիտուտի ֆիզիկամեխանիկական ֆակուլտետի երկրորդ կուրսի ուսանող:

Իսկ տասնչորսամյա Արտեմը մնալով Թիֆլիսում, ցերեկները աշխատում է փոստատար, երեկոները հաճախ լրագիր է վաճառում, գիշերները՝ հայտնվում պանդոկում, որպես մատուցող:

Նիհար ու վտիտ պատանի փոստատարը երազում էր ոչ թե երկանիվ հեծանվի, այլ Գյոթինգենում Պիեռ Ֆերմայի Մեծ Թեորեմի ապացուցման մրցանակը[1]:

Ցուրտ ու մռայլ մի գիշեր, երբ Արտեմը տուն էր վերադառնում պանդոկից, լսեց օգնության կանչող ճիչ: Աղաղակելով նա առաջ վազեց: Փողոցում մայթի վրա, ուշաթափ թողնելով մեկին, գողերը փախան, Արտեմը ուշքի բերեց նրան: Եվ երբ անծանոթը բացեց աչքերն ու խնդրեց հենակները, Արտեմը նոր միայն տեսավ, որ նա զուրկ է ոտքերից:

Հենց այդպես սկսվեց պանդոկի մատուցող Արտեմ Ալիխանյանի և բժիշկ Կոնստանդին Ջավախիշվիլու (Կոտեի) բարեկամությունը, որը տաղանդավոր պատանու մեջ էլ ավելի ամրապնդեց ձգտումը դեպի մեծ ու իսկական մաթեմատիկան:

Ստեփանոս Մալխասյանցը և Կոնստանդին Ջավախիշվիլին օգնում են Արտեմին նախ ընդունվելու Թիֆլիսի աշխատանքային դպրոցը, ապա և փականագործ՝ դեպոյում: Այստեղ էլ Արտուշը երկրորդ անգամ հանդիպում է Տեր-Ստեփանովին, որի օժանդակությամբ 1926 թվականին ստանում է անդրկովկասյան երկաթգծի պրոֆմիության ուղեգիր՝ Պետրոգրադի համալսարանի մաթեմատիկայի ֆակուլտետում սովորելու:

Նոր քաղաքն ու նոր կյանքը ընդհատեցին Արտեմի և Կոտեի բարեկամությունը: Նրանք այլևս իրար չտեսան:

Արտեմի հետագա բոլոր ջանքերը՝ հանդիպելու Ջավախիշվիլուն, ապարդյուն անցան: Միայն 1941 թվականին, երբ Ալիխանյան եղբայրներին ռադիոակտիվության բնագավառում կատարած գիտահետազոտական աշխատանքների համար շնորհվեց Սովետական Միության պետական մրցանակ, բազմաթիվ շնորհավորագրերի հետ նրանց ձեռքն անցավ Կոտեի սրտառուչ հեռագիրը:

Պետրոգրադի պետական համալսարան ընդունվելուց երկու տարի անց, Արտեմը գալիս է Թիֆլիս՝ ստանալու այն ժառանգությունը, որ նրան էր կտակել բարոնուհի ֆոն Դեռնոնեն:

Բարոնուհի ֆոն Դեռնոնեն ծագումով գերմանուհի էր:

Նա իր երջանիկ, բուռն երիտասարդությունը անց էր կացրել Փարիզում: Ճանաչել էր Վինսենտ Վան-Գոգին և կոչել նրան հանճարեղ խելագար, երբ տեսել էր «Խաղողի կարմիր այգին Արլեում» ցնորաշունչ կտավը...

Բայց եղբայրները այդպես էլ երբեք չիմացան, թե բարոնուհին Փարիզից ինչպե՞ս էր հասել Թիֆլիս և բնակություն հաստատել իրենց տան երկրորդ հարկում:

Տարեց այդ կինը և փոստատար տղան մտերմացան մարդկային քնքուշ, թանկագին զգացումներով: Բարոնուհին պատանու մեջ տեսնում էր իր միակ որդուն, որ վաղուց հեռացել էր աշխարհից: Արտեմի համար ֆոն Դեռնոնեն արվեստի հմայքներով լի Փարիզն էր:

Բարոնուհին եղբայրներին սովորեցրեց ֆրանսերեն և գերմաներեն կարդալ ու գրել: Որպես երանավետ անցյալի քաղցր, երջանիկ հուշեր, նրանց ցույց էր տալիս Մոնեի, Դեգայի և Ռենուարի իրեն նվիրած կտավները: Ոսկերիզ ակնոցի ապակիների միջից կկոցելով անսահմանորեն բարի կապույտ աչքերը, նա ինքնամոռաց պատմում էր Վան-Գոգի հետ Արլեում իր հանդիպումների մասին: Պատմում էր Գոգենի և հեռավոր Տահիթիի արտառոց, կուսական բնաշխարհի մասին, որտեղ ողջակիզվեց այդ տարաբախտ հանճարը:

Արտեմը, երբ մտավ ֆոն Դեռնոնեի բնակարանը տեր կանգնելու այն ողջ հարստությանը, որ իրեն էր կտակել բարոնուհին, տեսավ բոլորովին դատարկ հյուրասրահում թախծոտ ժպտում է միայն ֆոն Դեռնոնեի ամուսնու ծանոթ, բայց խոշտանգված դիմանկարը: Դեռ վաղուց նրան սպանել ու կողոպտել էին վրաց մենշևիկները:

Թալանված բնակարանում Արտեմը չգտավ ոչ մի կտավ, ո՛չ Բեթհովենի արծաթաձույլ կիսանդրին, ո՛չ գրքերը, ո՛չ բյուրեղյա սպասքը և ո՛չ էլ արևելքի երփներանգ գույներով ողողված թանկարժեք գորգերը: Չկար և ոչ մի հիշատակ:

[1] Պիեռ Ֆերմայի Մեծ Թեորեմի ապացուցման համար, Դարմշտադտի մաթեմատիկոս Վոլֆսկելը կտակել էր բավական մեծ գումար: Այդ տարիներին, նրա կտակած գումարը դարձել էր գրեթե 100.000 մարկ: Վոլֆսկելի կտակը տնօրինում էր Գյոթինգենյան Մաթեմատիկական ընկերությունը:



digitised by A.R.A.R.@

Այս բանաստեղծությունները ՆԻՆԵԼ ԱՄԻԼՅԱՆԸ գրել և խմբագրությանն է ուղարկել, երբ դեռևս աշակերտ էր Արարատի շրջանի Սուրենավանի գյուղի միջն. դպրոցում: Այժմ Նինելը Երևանի Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի բանասիրական ֆակուլտետի 1-ին կուրսի ուսանողուհի է:

## ՓՈՔՐԻԿ ԻՇԽԱՆԻՆ

... Նա ապրում, անպայման ապրում է
Այնտեղ, երկնքում, ինչ-որ տեղ՝
Աննշմարելի այն աստղի վրա,
Որին սիրում եմ ես նայել:
Տիեզերական միջանցիկ քամին
Շոյում է գանգուրները նրա,
Բայց անհողդողդ է իշխանիկը արի.
Կարմիր մայրամուտն է դիտում նա:
Դիմացից ժպտում է անդնչակալ գառնուկը,
Վարդը կամակոր չէ արդեն,
Իշխանն է հաճախ փոխում իր աթոռը,
Որպեսզի դիտի նոր մայրամուտներ:
Օ՜, ես էլ, իմ փոքրիկ, հավերժ փոքրիկ
իշխան,

Սիրում եմ մայրամուտը դիտել,
Ես էլ, ես էլ քեզ նման
Անչափ սիրում եմ վարդեր:
Բայց տարբեր են ճակատագրերը մեր՝
Ես մարդ եմ, դու մի՜ֆ անիրական,
Բայց այնպե՜ս կցանկանայի, այնպե՜ս
Լինել քո տեղը, իշխան...

## ՄԻ՛ ՊՈԿՈՏԵՔ ԾԱՂԻԿՆԵՐԸ...

Անհիշաչար են, անշուշտ, բույսերը,
Ծաղիկներն իրենք կյանք չեն աղերսում,
Բայց երանգավորված նրանց թերթերում
Ապրելու հույսն է մեղմ ճառագայթում:

## ԳԻՇԵՐԱՅԻՆ...

... Լուռ ցոլցլում է ջրերի հայելում
Լուսնի պատկերը ջինջ ու առօրյա,
Երգում են անվերջ ծղրիդներն անքուն,
Իսկ առուների եզերքին անող սեղմ
եղեգները
Լուռ դողդողում են կոհակով պատված
ջրերի վրա...

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

# ԳԱՐՈՒՆԸ ՀԱՍԵԼ, ԿԱԹՈՒՄ Է ԱՄԵՆ ԾԱՂԿԻՑ

Գարունը հասել, կաթում է ամեն ծաղկից՝
Ծիրանենու ծաղկի ճերմակ թերթի պես,
Խելագար սահում երթերում խրթին,
Ասես վալս պարում ողջ աշխարհի հետ։

Աշխարհն է արբած, տարված պտտվում,
Ու խինդն է հորդում վարար գետի պես,
Մի գետի, սակայն, որ ավազի տեղ
Ճերմակ ծաղիկներ է լոկ ափ շպրտում...

Գարունը հասել, կաթում է ամեն ծաղկից՝
Ծիրանենու ծաղկի ճերմակ թերթի պես,
Եվ ծիրանագույն այդ մեղմ կաթոցից
Վարդագունել է հողը ժպտերես...

# ԻՄ ԳՅՈՒՂՆ Է ԱՅՍՏԵՂ

Տանիքներից մեկին դեղին խոտի դեզ կա,
Օդում բույր կա չորացող խոտի,
Ճամփեզրին կապույտ մի առու կա
Եվ բույր կա եզերքին աճող դաղձի։

Տանիքներից վերև ամպի մի քուլա կա,
Տանիքներից ներքև՝ ձգվող մի փողոց,
Փողոցի ծայրին միայնակ մի տուն կա,
Որ հիշեցնում է հինավուրց ամրոց։

Ավելի ներքև ճահճացող մի գետ կա,
Ափին՝ դալկահար եղեգներ,
Բոլորից լքված մի ճանապարհ կա
Եվ շուրջն ամենուր ցորենի հասկեր,
Իմ գյուղն է այստեղ...

# ԾԻՐԱՆԱԳՈՒՅՆ ԵՆ ԵԶԵՐՔՆԵՐՆ ԱՅՆ ԵՐԿՐԻ, ՈՐՏԵՂ ԱՊՐՈՒՄ ԵՄ ԵՍ...

Ծիրանագույն են եզերքներն այն երկրի,
Որտեղ ապրում եմ ես...
Երկինքն այնպես կապույտ-կապույտ է,
Արշալույսները՝ լուռ ու հանգիստ։
Բոսորագույն են մայրամուտներն այն երկրի,
Որտեղ ապրում եմ ես.
Երեկոներն այնպես խաղաղ են, հեզ,
Գիշերներն այնպես աստղերով լի...

## ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ

Այս դեպքը պատահեց այն ժամանակ, երբ սովորում էի 4-րդ դասարանում։ Դպրոցից տուն վերադառնալուն պես, ճաշում էի ու վազում բակ խաղալու։ Երբ մայրս հարցնում էր, թե դասեր չունե՞ս սովորելու, ասում էի՝ չէ։ Եվահա մի օր էլ դպրոցից եկա տուն...

Լսում եմ ծնողներիս խոսակցությունը։

— Մինչև ե՞րբ պիտի ուսուցիչները սովորելու նոր դաս չտան երեխաներին, խելքս բան չի կտրում։ Կամ էլ մեր Թերեզիկն է ստում,— ասաց մայրս հուզված։

— Ես կարծում եմ Թերեզիկը ստում է,— պատասխանեց հայրս։

Մտա ներս ձևացնելով, թե չեմ լսել նրանց խոսակցությունը։

— Օ՜ֆ, այսօր այնքան շոգ է,— ասացի նստելով և միաժամանակ սպասելով, թե հիմա ի՞նչ կասեն։ Բայց նրանք նայեցին իրար երեսի ու լռեցին։

Հաջորդ օրը նորից նույնը։ Բակ իջնելու պահին հայրս հարցրեց.

— Դաս չունե՞ս սովորելու։

— Ո՛չ։

— Իսկ ես այսօր դպրոց եկա...

Սթափվելով, սկսեցի կմկմալ.

— Ե-ես պե-ե-տք է-է...— հայրս ընդհատեց կմկմոցս։

— Նստիր, դասերդ պատրաստիր և չհամարձակվես այլևս ստել։

Ես կարմրեցի և գլուխս կախ անցա ներս։ Փորձեցի սովորել գրականության անգիրը և տեսա, որ դա բոլորովին դժվար չէ։ Ռուսաց լեզվի բանավորն էլ մի քանի անգամ կարդալուց հետո սկսեցի արդեն վարժ կարդալ։ Եվ հասկացա, որ դաս սովորելն ավելի հեշտ բան է, քան ստելը։ Այնուհետև սկսեցի, բակ իջնելուց առաջ, դասերս պատրաստել, ազատելով ինձ ավելի մեծ հոգսից՝ ստելուց։

ԹԵՐԵԶԱ ԹՈՓԱԼՅԱՆ
Երևան, № 187 դպրոցի
7-րդ դասարանի աշ.



digitised by A.R.A.R.@

## ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

Հունվարի 1-ին ես զարդարեցի տոնածառը և տեղավորեցի թղթե արկղի վրա և ամբողջ արկղը ծածկեցի բամբակով: Նոր տարում եղբայրս մի գեղեցիկ մոմ էր նվեր ստացել: Հունվարի 4-ին, երբ հայրիկս ու մայրիկս աշխատանքի էին գնացել, եղբայրս վառել էր մոմը և անզգուշությամբ մոմը գցել բամբակի վրա: Բամբակը սկսել էր արագ այրվել: Եղբայրս հրդեհի բոցերը տեսնելով՝ սարսափած կանչեց ինձ: Ես տեսա վառվող բամբակը, բայց ինձ չկորցրի: Նկատեցի, որ արդեն բոցերի մեջ է նաև տոնածառը, վերցրի այն ու դուրս տարա: Հետո վազելով ներս եկա և սկսեցի բամբակի վրա ջուր լցնել: Դեռ բամբակը չէի հանգցրել, երբ տեսա, որ հատակն էլ է վառվում: Եղբայրս ու քույրս իրենց ամբողջովին կորցրել ու լալիս էին, իսկ ես անընդհատ ջուր էի լցնում կրակին: Հետո տեսա, որ չի հանգչում, պատի վրայից արագ հանեցի գորգը և փռեցի կրակի վրա: Վերջապես հանգավ: Մենք երեքով վախից դողում էինք: Թեև ես կարողացել էի ինքնուրույնություն հանդես բերել և փրկել մեր տունն ու մեզ հրդեհից:

ՎԱՐԴԱՆՅԱՆ ԿԱՐԻՆԵ
Ախալքալաքի Դ. Դեմիրճյանի անվ. № 4 հայկ. միջն. դպրոց, 6-րդ դաս. աշակերտուհի

Երբ միայնակ եմ լինում, և անելու բան չեմ ունենում, գնում եմ այգի և պառկում խոտերի մեջ: Իմ գլխավերևում թռչունները են ծլվլում: Ես ավելի ուշադիր եմ նայում նրանց, և ահա ինչ-որ բան, ինչ-որ հուշ իմ մտքի մեջ փշի պես ծակում է, և ես հիշում եմ իմ մանկությունը: Երբ փոքր էի, մայրիկից թաքուն շատ բաներ էի անում, որ չէր կարելի:

Մայրիկիցս թաքուն բռնում էի ճնճղուկներ, մաքրում և կրակի վրա խորովում: Այժմ, երբ մեծացել եմ և ամեն ինչ հասկանում եմ, փոշմանել եմ արարքներիս համար և երբեք այդպիսի բաներ երդվել եմ չանել: Չէ՞ որ կենդանիներին էլ, ինչպես մեզ, ստեղծել է բնությունը: Չէ՞ որ նաև նրանցով է գեղեցկանում մեր կյանքը...

ԼՈՒՍԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ
Թալինի շրջան, Ագարակի դպրոց



ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ




Մայր գետն ուներ երկու զավակ.
Մեկը՝ կրտսեր, մեկը՝ ավագ:
Ավագ որդին յոռղ էր շատ.
Մայրը երբ որ դանդաղ գնար,
Վազում էր նա մոր հետևից,
Մայրը երբ որ արագ գնար,
Բռնում էր նա մոր փեշերից:
Գնում էր միշտ միևնույն հունով,
Որով մայրը,
Երգում էր միշտ միևնույն ձայնով,
Որով մայրը:
Իսկ կրտսերը հնազանդ չէր
Ո՛չ ուրիշին, ո՛չ էլ մորը.
Երբ որ մայրը արագ գնար,
Ետ էր մնում,
Երբ որ մայրը դանդաղ գնար,
Վազում էր ու առաջ ընկնում:
Երբ որ մայրը աջ էր գնում,
Ինքը ձախ էր միշտ ոլորվում,
Երբ որ մայրը ձախ էր գնում,
Ինքը աջ էր պտույտ անում:
Ու մի օր էլ ինքն իր գլխին
Երբ գնում էր թռչկոտելով,
Հանկարծ ընկավ մեկ ուրիշ հուն՝
Նեղ ու տոչոր մի ավազուտ...
Ցնցվեց, դողաց մի ակնթարթ
Եվ հասկացավ,
Որ ուզում է թռչել առաջ,
Բայց չի կարող,
Որ ուզում է թռչել դեպ աջ,
Բայց չի կարող,
Որ ուզում է թեքվել դեպ ձախ,
Բայց չի կարող.
— Մայրի՜կ, մայրի՜կ,
Կորչում եմ ես,
Մայրի՜կ, արի՛ ինձ օգնության:—
Բայց դե հունը մնում է հուն:
Մայրը լսեց, երբ իր հունով
Գնացել էր ու ծով հասել:
Խելառ որդին ի՞նչ իմանար,
Որ ծով հասած ոչ մի գետ-մայր
Էլ չի կարող ծովից դուրս գալ...

digitised by A.R.A.R.@

# ԲԱՂՆԻՔ՝ ՈՒՂԵԾՐՈՒՄ

Ո՞ւմ հայտնի չէ, որ աշխատանքից հոգնած տուն վերադառնալով, երբ ցընցուղ ես ընդունում, սրբվում, կրկին դառնում ես թարմ ու առույգ: Հապա որքա՜ն ավելի եռանդ են ծախսում տիեզերագնացները:

Նրանք նույնպես պետք է ամեն օր լվացվեն, ցնցուղ ընդունեն, թարմանան: Բայց այդ ամենով տիեզերանավն ապահովելը հեշտ բան չէ: Գիտե՞ք, թե որքան ջուր ենք ծախսում մեկ անգամ լվացվելու համար: Ձեռքերը կարելի է լվալ մեկ լիտրով ,իսկ ցնցուղ կամ լոգանք ընդունելու համար արդեն տասնյակ լիտրեր են պետք: Իսկ ինչպե՞ս այդքան ջուր ամբարել տիեզերանավում, չէ՞ որ մեր օրերում տիեզերագնացները երբեմն ուղեծրում մնում են մի քանի ամիս: Գիտնականները գտել են ելքը: Տիեզերագնացների համար ընտեղծվել է ընդարձակ, հերմետիկ փակվող բաղնիք-սկաֆանդր, ուր մատուցվում է օճառ և ջուր և անմիջապես էլ ջուրը հավաքվում է մինչև վերջին կաթիլը:

Ի դեպ, տիեզերքում «մինչև վերջին կաթիլ» արտահայտությունը որոշակի ոչինչ չի ասում: Ջուրը քանի դույլ էլ որ լինի, միևնույն է, հավաքվում, դառնում է հըսկայական գնդաձև կաթիլ-զանգված: Բայց չէ՞ որ այնտեղ անկշռելիության վիճակ է: Այդ պատճառով, ջուրը նախ փոշիացվում է, մաքրվում, հետո միայն նորից գործածվում: Իր կառուցվածքով բաղնիքը շատ թեթև է ու քիչ տեղ է գրավում: Բայց գործում է անխափան և տիեզերագնացների վկայությամբ ապահովում է ոչ միայն մաքրություն, այլև լավագույն խթան է թարմանալու համար:

Տիեզերական թռիչքների համար նախատեսված շատ իրեր ու առարկաներ օգտագործվում են նաև երկրի վրա: Իհարկե, անհրաժեշտություն չկա մեր սովորական լոգարաններն ու ցնցուղները փոխարինել այդպիսի սկաֆանդրերով, բայց տիեզերագնացներից խնայողության արվեստը սովորելը, խմելու ջրի պաշարները չշռայլելը, օգտակար է ամեն մեկին:

1983 • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ 1983 ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ •





«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ 1983 Թ. ԼԱՎԱԳՈՒՅՆ ԳՐԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄՐՑԱՆԱԿԸ ՇՆՈՐՀՎԵՑ ԱՇԽԵՆ ԱԲԱԶՅԱՆԻՆ՝ «ՎԵՐՋԻՆ ԱՔԱՂԱՂԸ», «ՎԻՐԱՎՈՐ ԹԻԹԵՌԸ», «ՄԱՐԴ ԷՐ ԾՆՎԵԼ» ԵՎ «ԱԼՎԱՐԴԻԿԻ ԱԿԱԴԵՄԻԱՆԵՐԸ» ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐԻ ՀԱՄԱՐ:



ՆԿԱՐԻՉ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԸ ԱՄՍԱԳՐՈՒՄ ԿԱՏԱՐԱԾ ՆԿԱՐԱԶԱՐԴՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ ԱՐԺԱՆԱՑԱՎ 1983 Թ. ԼԱՎԱԳՈՒՅՆ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՄՐՑԱՆԱԿԻՆ:

digitised by A.R.A.R.@

ՎԱՀԱԳՆ ՄՈՒՂՆԵՑՅԱՆ

# Մեր մանկության վերջին օրը



ՆԿ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Ձմռան ամիսներին դժվար է իջնել գետափ, որովհետև զառիթափը դառնում է սառցապատ ու վտանգավոր: Սամվելը ոտք դրեց փափուկ ձյան վրա՝ չիմանալով, որ ձյան ծածկոցի տակ սառույց է: Հետո Սամվելի վնասված մարմինը մեծ դժվարությամբ ես ու Աղվանը քարշ տալով բարձրացրինք վեր: Հենրիկը՝ Սամվելի մեծ եղբայրը , ինձ ու Աղվանին ծեծելով վռնդեց իրենց բակից: Մեր կտուրից երկար ժամանակ լսում էինք Հենրիկի գոռգոռոցը. նա ամեն ինչում մեղադրում էր ինձ ու Աղվանին, որն ինձնից ավելի շատ էր ծեծ կերել: Նա մտել էր չոր խոտերի մեջ և ուսերի ցնցումներից հասկացա, որ լաց է լինում: Հորս մահից հետո ես կորցրել էի արտասուքներս, և վիրավորանքից ու անզոր կատաղությունից իմ մեջ մեծ, շատ մեծ ատելություն էր լցվում Հենրիկի հանդեպ:

— Կսպանեմ, ա՛յ կտեսնես:

Աղվանը նստեց, հարվածներից ու ար-



digitised by A.R.A.R.@

ցունքից տաքացած գլուխը դրեց ուսիս:

— Մարտին քեռին չմեռներ, Հենրիկը մեզ չէր ծեծի, կվախենար:— Աղվանը խոսում էր աչքերը փակ, և ես զարմանում էի, թե արցունքը ինչպես է աչքերից դուրս գալու ելք գտնում:

Որոշեցինք ինչպես էլ լինի Սամվելից տեղեկություն ստանալ և սպասեցինք մինչև մութն ընկավ ու նրանց տան լույսերը վառվեցին: Մեր կտուրից պարզ երևում էր սեղանատան ներսը: Սամվելի հայրն ու եղբայրները ճաշում էին. Սամվելը չկար: Կատվի նման փափուկ ու անաղմուկ մեր կտուրից անցանք Աղվանենց, հետո՝ Սամվելենց կտուրը: Ապա իջանք բակ և պատին քսվելով , գաղտագողի մոտեցանք այն սենյակի պատուհանին, որտեղ քնում էր Սամվելը: Աղվանը փոքրամարմին էր ու վտիտ: Ես նրան հեշտությամբ դրի ուսերին ու բարձրացրի, որպեսզի պատուհանից ծիկրակի: Հենց այդ պահին էլ ուժգին հարված ստացա մեջքիս, մեկի մատները ամուր ձիգ տվին մազերս: Աղվանը թրմփաց կողքիս և մշուշված աչքերով տեսա, թե նրա փոքրիկ մարմինը ինչպես հայտնվեց ցանկապատի վրա ու անհետացավ հակառակ կողմը: «Սամվելը ինձ չէր լքի»,— անմիջապես անցավ մտքովս և Հենրիկի վայրենի գոռոցից ցնցվեց մեր թաղի լռությունը: Ցանկապատի կատարից նկատեցի տանից դուրս թափվող մարդկանց և բերանումս արյան աղի համ զգացի. փախչելուց առաջ դաժանորեն կծել էի Հենրիկի մատը:

Երկու օրից վերջանում էին ձմեռային արձակուրդները: Մայրս առավոտ վաղ գնում էր աշխատանքի և մինչև նրա վերադարձը մնում էի մենակ: Փակվել էինք ամեն մեկս մեր տանը՝ Աղվանը ինձնից վախենալով, ես՝ Հենրիկից: Այդ առավոտ կամաց տկտկաց մեր դարպասի դուռը, որը փակել էի լրացուցիչ լինգերով: Ես լսեցի աշխարհում ինձ համար ամենամտերիմ ձայնը՝ Սամվելի ձայնը: Թևերս տարածած հալվել էի դարպասին և հակառակ կողմից լսում էի Սամվելի շնչառությունը:

Ու չիմացա ինչպես բացեցի դարպասը: Սամվելը երկար ժամանակ ինձ բաց չէր թողնում գրկից: Հետո աղանձ էր բերել ու տանձի չիր: Նրա ճակատին սպիտակ վիրակապ կար, և կապույտ աչքերը խոր ու խորհրդավոր էին:

— Աղվանին կանչենք,— ասաց Սամվելը:

— Չէ, նա ինձ դավաճանեց:

— Կանչենք: Մի քիչ կծեծենք ու կըմոռանանք, էլ այդպիսի բան չի անի:

— Չէ՛,— ասացի,— չէ՛:

Սամվելը հասկացավ, որ ինձ չի համոզի, սկսեց հագնել փափուկ, երկարաճիտ կոշիկները:

— Ցից քարից պարան կապեցի, իջա ցած,— նա խոսում էր կոշիկները հագնելու ճիգերից տնքտնքալով:— Գետի կողերը սառել են, մեջտեղը բաց է, արի գնանք:

Դա մեր ամենաթանկ ու սիրելի խաղն էր: Մի մեծ սառցակտոր էինք պոկում, հրում գետի կենտրոնը և նավակ դարձրած, ձողերի օգնությամբ լողում էինք հոսանքի ուղղությամբ՝ Սև եկեղեցուց էլ այն կողմ: Հետո իջնում էինք անտառի մոտ և դահուկներով սահում մինչև մեր թաղը:

... Սառցե նավակը արագորեն իջնում էր ցած: Մեր ճիչերից սարսափած ագռավները ճողոպրում էին գետի ափերից: Մենք չէինք սիրում ագռավներին, որովհետև, ինչպես ասում էին թաղի մեծերը, հայրիկիս մահվան օրը նրանք կըռկռացել էին: Եվ համոզված, որ նրանք են հորս մահվան պատճառը, անդադար հալածում էինք՝ զուր փորձելով վտարել մեր թաղից:

Սև եկեղեցու մոտ սառույցն ամբողջությամբ պատել էր գետի մակերեսը: Բայց շատ ուշ նկատեցինք և բախվեցինք ամբողջ թափով: Այդ պահին մենք փաթաթվեցինք իրար և այդպես էլ հայտնվեցինք ջրի մեջ՝ սառույցի տակ: Գետը խոր չէր. ջրի ու սառույցի մեջ տարածություն կար: Ամուր կառչել էինք իրարից և սուզվելով ջուր էինք կուլ տալիս՝ ամեն անգամ ջրի երես դուրս գալով զարմանում, որ դեռ չենք խեղդվել: Ոչ մի պատկերացում չունեինք, թե որքան տևեց այդ տխուր վիճակը: Երբ դուրս եկանք ջրի բաց տարածքը, տեսանք Աղվանին, որ գետակով վազում էր՝ փայտի մի կտոր ձեռքին, և դեմքը արյունոտված էր: Հետո, ավելի ուշ, երբ դուրս էինք եկել, զարմանում էինք, թե ֆիզիկապես մեր միջի ամենաթույլը լինելով, Աղվանին ինչպես հաջողվեց մեզ հանել ջրից...

Այդպես, թրջված ու հալից ընկած, մի կերպ բարձրացանք վեր: Դողը համակեց



digitised by A.R.A.R.@

մեզ, երբ արդեն տեղավորվել էինք մեր կտուրի չոր խոտերի մեջ։

— Հարկավոր է կրակ անել,— ասաց Աղվանը։

Իմ ու Սամվելի ատամների կափկափոցը հաստատեց նրա վճիռը, և Աղվանը գնաց լուցկի բերելու։ Խոտի մի մեծ խուրձ առանձնացնելով, Աղվանը կտուրի անկյունում կրակ վառեց, և նրա օգնությամբ հանեցինք մեր փայտացած շորերը՝ որոշելով չորացնել։ Հագուստներից ազատվելուց հետո տաքացանք և սկսեցինք պարծենալ ու կատակել։

— Չորս հատ ձուկ էի բռնել, ափսոս ձեռքիցս պլստացին։— Աղվանը թերահավատորեն աչքերը կկոցեց։

— Ճիշտ է ասում,— վկայեցի ես,— մի մեծ ձուկ էլ իմ գրպանն էր մտել, ջրից դուրս գալիս ծլկեց։ Չտեսա՞ր։

— Տեսա, մեծ ականջներ ուներ։

Տեսնելով, որ Աղվանը ծաղրում է մեզ, Սամվելը վառվող փայտի մի կտոր նետեց նրա վրա...

Այլևս ոչինչ չէինք կարող անել. հրդեհը տարածվեց բռնն ու միանգամից։ Չոր խոտն ու փայտի կտորտանքը վառվում էին ճարճատելով։ Սեղմվել էինք իրար և համրացած, ահաբեկված նայում էինք բոլոր կողմերից մեզ շրջապատող բոցի լեզվակներին։ Ծուխը խեղդում էր մեզ։

Անդիմադրելի մի ուժ ինձ քաշեց, պոկեց Սամվելից ու Աղվանից։ Լսեցի մորս վախեցած, բեկբեկուն ճիչը, ապա հայտնըվեցի օդում ու կորցրի գիտակցությունս։ Հավանաբար շուտ ուշքի եկա. Աղվանը աչքերը փակ պառկած էր կողքիս՝ թառի տակ, իսկ Հենրիկը բոցերի մեջ կորած, ձեռքերի վրա դուրս էր բերում Սամվելին։

Առանձնապես չէինք վնասվել, միայն Սամվելի աչքերն էին ցավում։ Սամվելի հայրը մեզ տարավ հիվանդանոց՝ Հենրիկին տեսնելու։ Հիվանդասենյակ մտա վախվորած, սրտի դողով։ Հենրիկը պառկած էր՝ դեմքը վիրակապերի մեջ։ Մեխվել էի շեմքին ու խանգարում էի մյուսներին ներս մտնել։ Հենրիկը ձեռքով արեց ինձ ու ժպտաց անհավատալի բարությամբ։ Ու մի աներևույթ ուժ ինձ հրեց Հենրիկի մահճակալի մոտ։ Ափերիս մեջ առա նրա անվնաս մնացած ձեռքը, սեղմեցի դեմքիս, ու հայրիկիս մահից հետո առաջին անգամ լաց եղա տաք, սփոփիչ արցունքներով։

Դա իմ մանկության վերջին օրն էր։



## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Հայոց տոմարի 4-րդ ամիսն է, հերթականությամբ համապատասխանում է ապրիլ ամսվան։

Ըստ հայ մատենագիրներ Ագաթանգեղոսի, Մ. Խորենացու և այլոց, հեթանոս հայերի աստվածներից մեկը կոչվում էր Տիր։ Տիրը հայոց դիցարանի գերագույն աստված Արամազդի գրագիրն էր՝ գրի և գրչության աստվածը։ Գրի և գրչության աստվածություն ունենալը ցույց է տալիս, որ հայ ժողովուրդը դեռևս քրիստոնեության մուտքից (301 թ.) ու գրերի գյուտից (405 թ.) շատ առաջ կրթության և գիտության հանդեպ պաշտամունք է ունեցել։ Մերօրյա գիտնականները համարում են, որ Տրե ամսանունը ծագել է հենց այս Տրե աստծո անունից։

Անանիա Շիրակացին համարում է, որ Տիրը Հայկ Նահապետի որդիներից էր։ Իսկ Հայկը, հայերի նախահայրը լինելուց բացի, նաև աստվածություն էր և համապատասխանում էր հույների Օրիոնին։ Օրիոնի համաստեղությունը հին հայկական տիեզերագիտական գրքերում թարգմանված է «Հայկի համաստեղություն»։ Այսպիսով՝ Տրե ամսանունը ծագում է Հայկ Նահապետի որդի Տիր աստծո անունից։




(Տևել է նոյեմբերի 9-ից դեկտեմբերի 8-ը)

digitised by A.R.A.R.@



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ



## ՀՌԻՓՍԻՄԵ

Ամեն երկիր իր գույնն ունի: Միշտ այնպես, ինչպես ամեն ժողովուրդ ունի իր բնավորությունը, իր լեզուն: Ո՞րն է Հայաստանի գույնը: Գուցե Սարյանի դեղնավու՞նը կամ գուցե Մինասի կարմրավունը: Գուցե նուրբ դեղնադարչնագույնը...

Դեղնադարչնագույն կոլորիտով է շնչում Սուրենյանցի «Հռիփսիմե» կտավը: Այդ կտավը մեր պետական պատկերասրահի, իսկ պատկերված եկեղեցին մեր բազմադարյան ճարտարապետության ամենաթանկ գանձերից է:

618 թվին է կառուցվել Հռիփսիմե տաճարը: Իր զանգվածի բացարձակ չափերով նա անհամեմատելի է Արարատի հետ և կանգնած է Արարատի դիմաց, իբրև հակակշիռ նույնքան վեհ, որքան ինքը՝ Արարատը:

Ծավալների կատարյալ ներդաշնակություն և ձևերի զարմանալի պարզություն. ահա նրա ճարտարապետական բնութագիրը:

Երբ դրսից նայում ես եկեղեցուն, նա կարծես գետնի տակից դուրս եկած քարակոփ բռունցք լինի՝ ծանր ու ամուր: Եվ որքան ծանր է դրսից, նույնքան թեթև է ներսից, որտեղ կանգնած մարդուն թըվում է, թե ուր որ է եկեղեցին կպոկվի տեղից ու կճախրի վեր:

Դահլիճի ներքին տարածությունն այնքան ամբողջական է, որ ավագ խորանը տեսնելու համար միևնույնն է թե որտեղ ես կանգնած: Եկեղեցին ունի 4 խորան, որոնցից գլխավորն արևելյան կողմում է, մուտքի ճիշտ դիմաց:

Եկեղեցու ճակատների հզոր եռանկյունաձև խորշերը պարզ գծագրում են նրա ներքին կառուցվածքը: Բացի պատը թեթևացնելու կարևոր ֆունկցիայից (քանի որ Հայաստանը սեյսմիկ գոտի է, այսինքն երկրաշարժի վտանգի ենթակա, և որքան թեթև լինի պատը, այնքան կայուն կլինի), այդ խորշերն ունեն նաև գեղագիտական նշանակություն: Նրանք ուժեղ լույս ու ստվերով տպավորիչ են դարձնում բացարձակ հարթ պատը:

Պատերն ամենուրեք նույն հաստությունն ունեն: Դրանք ճկուն գծերով ամփոփում են խորաններն ու ավանդատները, այնուհետև յուրաքանչյուր ճակատին մի զույգ խորշ գծելով, հանգչում են մուտքի մոտ: Իսկ հանդիպակաց խորանների գագաթներն իրար միացնող գծերը խաչ են կազմում, որը պսակվում է փառահեղ գմբեթով:

Ի՞նչ հստակ մտահղացում: Եվ մտահղացման ինչպիսի՜ հստակ իրագործում...

**ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ**
ճարտարապետ



digitised by A.R.A.R.@




ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Երկու աղվես են լինում: Մեկը ապրում էր սարում, մյուսը՝ ձորում: Ձմռան մի օր սարի աղվեսը հյուր է գնում ձորի աղվեսին:

— Վաղուց է չենք տեսնվել, կարոտել եմ քեզ,— ասում է սարի աղվեսը, բարև տալուց, բարև առնելուց հետո:

— Բարով հազար բարի ես եկել, պատմիր տեսնեմ ո՞նց ես ապրում:

— Մի հունար ունեմ, նրանով մի կերպ ապրում եմ:

— Իսկ ես հազար ու մի հունար ունեմ, ապրում եմ աղավարի,— պատասխանում է ձորի աղվեսն ու վեր կենում, գնում, որ մի բան որսա, բերի ընկերոջը հյուրասիրի:

— Պարծեցավ, որ հազար ու մի հունարի տեր է, բայց փանը ուտելիք չունի,— խոսում է սարի աղվեսն ու սպասում:

Սպասում է, սպասում, տեսնում է նա չկա ու չկա: Վեր է կենում, գնում նրան գտնելու: Ձյան վրա ընկերոջ թաթերի հետքերը բռնած՝ գնում է, գնում ու տեսնում նրան թակարդն ընկած: Կատակում է.

— Ասում էիր, թե հազար ու մի հունար ունես: Գոնե մի հունարով ազատվեիր թակարդից:

— Կատակի ժամանակը չէ, ասա՝ ոնց փրկվեմ:

— Սատկած ձևացիր:

— Հետո՞:

— Ես էլ սատկած կձևանամ:

— Հետո՞:

— Հետո կտեսնենք, թե ինչ կպատահի,— ասում է սարի աղվեսն ու մի քիչ հեռու պառկում ձյան վրա:

Մյուսն էլ սատկած է ձևանում ու պառկելով անշարժ, անհամբեր սպասում, թե ինչ է պատահելու: Շատ է անցնում թե քիչ, գալիս է ջահել որսորդը՝ գլուխը տաք: Ձմռան օրերին նա մի քիչ խմած էր որսի դուրս գալիս: Տեսնելով աղվեսներին, համոզված, որ սատկած են, թակարդից հանում է աղվեսին դնում է մի կողմ ու թեքվում է, որ մյուսին վերցնի. տեսնում է սա վեր թռավ ու պո՜կ, դեպի ձորը: Զայրացած որսորդը գնում է, որ առաջին աղվեսին վերցնի. բայց որտե՞ղի՞ց աղվես. սա էլ մյուսից առաջ ընկած այնպե՜ս է փախչում, այնպե՜ս է փախչում, որ գնդակն էլ չի հասնի նրանց ետևից, ո՞ւր մնաց որսորդը:

Աղվեսները որսորդից ազատված ձորի խորքում գտնում են իրար:

— Դե հիմա ասա, տեսնեմ, քո հազար հունար ունենա՞լն էր լավ, թե՞ իմ մեկը զգուշությունը:

— Քոնը, քոնը,— ասում է ձորի աղվեսը և հյուր գնում նրան:



digitised by A.R.A.R.@




ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ

Լոնդոնի կենտրոնում, արքայական ապարանքներից ոչ հեռու, պեղումներ կատարող հնագետներին հաջողվեց հայտնաբերել մի բրածո լու: Միջատը գտնվեց 15-րդ դարի կեսերին ապրած առնետի բավականին լավ պահպանված մաշկի թավ մազածալքում: Նրանք իրենց հայտնագործությանն առանձնապես մեծ նշանակություն չտվին և ոչ էլ ցանկացան լուն ուղղ դարձնել: Սակայն գործն այլ ընթացք ստացավ, երբ հնագետները այն հանձնեցին Լոնդոնի բնապատմական թանգարանին: Միջատաբան մասնագետներին հաջողվեց ապացուցել, որ միջատի այդ հինգհարյուրամյա մումիան ոչ թե առնետային, այլ մարդկային լվի մնացորդ է: Բանն այն է ,որ արյունածուծ լվերի տեսակները դարերի ընթացքում հարմարվել են տարբեր կենդանիների և մեծ դժվարությամբ ու միայն ստիպված են վերաբնակվում. ասենք, մարդունն՝ առնետի մոտ կամ հակառակը:

Նման ստիպողական պատճառ կարող էր հանդիսանալ մարդկանց քանակի հանկարծակի նվազումը, որը կստիպեր միջատին քաղցը հագեցնելու համար փնտրել նոր զոհ:

Մասնագետները նշեցին անգլիացիների համար այն տհաճ փաստը, որ ուշ միջնադարում, արքայական պալատի շրջակայքում վխտում էին լվոտ առնետներ, և հիշեցին 14 և 15-րդ դարի ժանտախտի ահեղ համաճարակը: Այդ աշխարհատարած աղետը պատմության մեջ հիշվում է «սև մահ» անունով: Ժանտախտը սկսվելով Արևելյան Չինաստանից՝ ամայացրեց Հնդկաստանը, դիակներով ծածկեց Սիրիայի, Փոքր Ասիայի, Հայաստանի տարածքը, Եվրոպայից խլեց 25 միլիոն, իսկ Ասիայից 35 միլիոն մարդ, այսինքն աշխարհի այն ժամանակվա բնակչության մեկ քառորդը: Հիրավի աշխարհավեր էին ժանտախտի համաճարակները, որոնք շնորհիվ ձեռնարկված միջոցառումների և գիտության հաջողությունների, մեր ժամանակներում թեև կորցրել են իրենց վաղեմի նշանակությունը, բայց և այնպես գտնվում են մասնագետների աչալուրջ հսկողության տեսադաշտում ,որպես ծպտյալ և վերջնականապես չհաղթահարված սպառնալիք: Բայց չնայած դրան, նույնիսկ վերջերս զարգացած երկրներից ԱՄՆ-ում եղան ժանտախտի մահացու դեպքեր:

Ժանտախտը սուր վարակիչ ու տարափոխիկ հիվանդություն է, որն ախտավորում է մարդուն և կրծողներին: Հարուցիչը մանրադիտակային ցուպիկն է, որը հայտնաբերել են Մինխը 1894 թվին, ապա Հոնկոնգում, իրարից անկախ երկու գիտնականներ՝ Կիտազատոն և Իերսենը: Հիվանդության հիմնական կրողները և աղբյուրն են կրծողները (առնետները, մկները և այլն), իսկ փոխանցողները արյունածուծ միջատները, հատկապես լվերը:

Ժանտախտը մարդկությանը հայտնի է անհիշելի ժամանակներից: Դեռևս Հոմերոսն է «Իլիականում» նշում հունական ռազմաճամբարում հանդիպած հիվանդության դեպքերի մասին: Պատմահայր Հերոդոտը նույնպես հիշատակում է ժանտախտի համաճարակը, որն սկսվեց Տրոյական պատերազմից հետո: Հետագայում նման հիշատակումները շատանում և ավելի ստույգ են դառնում: 4-րդ դարի կեսերին, Արշակ Բ թագավորի օրոք ժանտախտը հնձեց մայրաքաղաք Արշակավանի համարյա ողջ բնակչությանը: Առանձնապես չարորակ էր 543 թ. Կոստանդնուպոլսի համաճարակը:

9-րդ դարում ժանտախտն ամայացրեց ողջ Եվրոպան և 11-րդ դարում առաջին անգամ հայտնվեց Ռուսաստանում և Լեհաստանում, որտեղ ամայացան ողջ քաղաքներ: Հայաստանում վերջին խոշոր բռնկումն եղել է անցյալ դարի առաջին կեսում, որը հետագայում ընդգրկեց Կոստանդնուպոլիսը, Սիրիան, և Եգիպտոսը:

Այժմ ժանտախտի դեմ տարվում է համակողմանի, գիտականորեն հիմնավորված միջազգային պայքար, որը տվել է հրաշալի արդյունքներ և թեկուզ չի վերացրել, բայց սանձահարել է մարդկության այդ աղետը:



digitised by A.R.A.R.@

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



●Առաջին սուզանավը պատրաստել է հոլանդացի գիտնական Կ. Վան Դրեբելը 1620 թվականին՝ Լոնդոնում:

●Երբ 15-րդ դարում Քրիստափոր Կոլումբոսը ուղևորվում էր Ամերիկայի ափերը, «Սուրբ Մարիայի» առագաստների համար ընտրեց ֆրանսիական Նիմ քաղաքում հյուսված գործվածք: Ամերիկյան մայր ցամաքում սկզբում այդ գործվածքից սայլակառքերի համար ծածկոցներ էին կարում, իսկ հետագայում՝ աշխատանքային հագուստ: Դա էլ հենց ջինսի գործվածքն էր: Հետո ջինսից կարված տաբատներ սկսեցին օգտագործել ամենուրեք:

●200 տարի առաջ Մոնգոլֆիե եղբայրները բաց թողեցին աշխարհում առաջին օդապարիկը՝ դրանով սկիզբ դնելով օդագնացության դարաշրջանին:

«Ուղևորների» առաջին թռիչքը տեղի ունեցավ Վերսալյան պալատի այգում: Գունազարդ մեծ օդապարիկը Ժոզեֆ Մոնգոլֆիեն լցրել էր վառված տաշեղների և բրդի ծխով: Գնդին ամրացված զամբյուղում կային նաև ոչխար, աքաղաղ և բադ:

Թռիչքը բարեհաջող ավարտվեց: «Ճանապարհորդները» անվնաս վայրէջք կատարեցին:

1783 թվականի նոյեմբերի 21-ին աշխարհում առաջին անգամ երկու քաջսիրտ ֆրանսիացիներ՝ Պիլատր դե Ռոզիեն և դ'Արլանդը հսկայական օդապարիկով երկինք բարձրացան: Այս քաջ օդային ճանապարհորդները տեղավորվել էին օդապարիկից կախված զամբյուղում:

150 մ բարձրանալուց հետո, քամին օդապարիկը Սենի վրայով քշեց 8 կմ հեռու և հասցրեց Փարիզի մյուս ծայրը: Կեսժամյա թռիչքից հետո նրանք հանգցրեցին օդապարիկի ներսի օդը տաքացնող կրակը և բարեհաջող վայրէջք կատարեցին:

●Ահա թե շուրջ 100 տարի առաջ ինչ է գրել «Մոսկովսկիե վեդոմոստի» թերթը. «... Հայտնվում է ի գիտություն Մոսկվայի և նահանգի բնակիչներին, որ անօրինական հավաքույթների և իբր ինչ-որ ուղղափառների՝ լուսին կատարած թռիչքների մասին խռովարարական լուրերի համար քաղաքացի Նիկիտա Պետրովը Մոսկվայից աքսորվել է կիրգիզական Բայկանուր ավան»:

●Մինչև գրող դառնալը Մարկ Տվենը փորձել է մի շարք մասնագիտություններ: Եղել է ոսկեխույզ, նավաստար, լրագրող և նույնիսկ գյուտարար: Օրինակ, նա հնարել է փողկապ ագուցող մի փոքրիկ մեքենա, բարելավել է գրամեքենայի կառուցվածքը: Ճիշտ է, իր այս գյուտարարություններին ապագա գրողը վերաբերվում էր ժպիտով: Նրան զարմացնում էր այն, որ փողկապ ագուցող մեքենան, որն անկեղծ ասած, ոչ ոքի պետք չէր, ավելի մեծ հաջողություն ուներ հասարակության մեջ, քան իսկապես կատարելագործված գրամեքենաները:

●«Ես ասում եմ, որ Արեգակի վրա, ինչպես խալ, տեսել եմ Վեներան»:

Այս տողերը գրված են մագաղաթի վրա, որի տարիքը հազարից անց է: Հեղինակը Հին Արևելքի գիտնական Ալ-Ֆարաբին է:

Արդյո՞ք չէր սխալվում միջնադարյան աստղագետը: Չէ՞ որ, որպեսզի նա տեսներ Վեներայի անցումը Արեգակի սկավառակի վրայով, պետք է ճշգրիտ հաշվեր մոլորակների շարժումը, որոշեր խավարման օրն ու ժամը:

Ժամանակակից մասնագետների հաշվումները ցույց են տվել, որ 910 թվականին այժմյան Ղազախստանի տարածքից, իսկապես կարելի էր հետևել «արևի վրայի խալին»:



digitised by A.R.A.R.@

ԺԱՄԱՆՑ

- Իմ հոր տղան իմ եղբայրը չէ: Ո՞վ է նա:
- Իմ հորեղբայրը ունի եղբայր: Նա իմ հորեղբայրը չէ: Ո՞վ է նա:
- Ո՞ր ժամացույցն է օրը միայն երկու անգամ ցույց տալիս ճիշտ ժամանակը:
- Սենյակն ունի չորս անկյուն: Ամեն մի անկյունում նստած է մի կատու: Ամեն մի կատվի դիմաց նստած է երեք կատու: Քանի՞ կատու կա սենյակում:
- — Քանի՞ տարեկան եք, պարո՛ն Բրաուն,— մի անգամ հարցրեց նրան ընկերը:

— Ճիշտը մոռացել եմ,— պատասխանեց նա,— բայց իմ եղբայրը երկու տարով ինձնից մեծ է, քույրս չորս տարով մեծ է եղբորիցս, մայրս քսան տարեկան էր, երբ ես ծնվեցի, և երեկ նա ինձ ասաց, որ մեր ընտանիքի չորս անդամների՝ եղբորս, քրոջս, մորս և իմ միջին տարիքը կազմում է 39:

Քանի՞ տարեկան է պարոն Բրաունը:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

32
34
38

ԸՍ՛ ԻՆՔՍ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

digitised by A.R.A.R.@

ԻՆԴԵՔՍ՝ 77806
ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.



ԱՐՇԱԿ ՍԱՐԱՖՅԱՆ, 4-րդ դաս. (Եգիպտոս)

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)
Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՇՕՂԼՅԱՆ, տեխ. խմբագիր՝ Ծ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հանձնված է տպագրության 23. 1. 1984 թ.։ Ստորագրված է տպագրության 5. 4. 1984 թ.։ ՎՖ 10856։ Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 64032։ Պատ. 191։ Գինը՝ 15 կ.։*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։*

Сдано в набор 23.1.1984 г. Подписано к печати 5.4.1984 г. Формат $70 \times 100^1/_{16}$. ВФ 10856. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64032. Заказ 191. Цена 15 коп. Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

digitised by A.R.A.R.@